Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 14 (33)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1946

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 14 (33)

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1945

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



—

## ՍՍՌՄ ԺՈՂԿՈՄՍՈՎԵՏՈՒՄ ԵՎ ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ

# 1945 ԹՎԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*ՍՍՌ Միության Ժողովրդական Կոմիսարների Սովետը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն նշում են, որ Հայրենական պատերազմի շրջանում, կոլխոզային գյուղացիության հոգատարության շնորհիվ Կարմիր Բանակը պարենամթերքի պակասություն չզգաց: Կոլխոզները և սովխոզները բանվորներին և ինտելիգենցիային մատակարարում էին պարենամթերք, իսկ արդյունաբերությանը՝ հումք, ապահովում էին ռազմաճակատի համար սպառազինության և հանդերձանք պատրաստող գործարանների ու ֆաբրիկաների նորմալ*

աշխատանքը։ Կոլխոզային գյուղացիությունը ակտիվորեն և Հայրենիքի հանդեպ իր պարտքի լիակատար գիտակցումով Կարմիր Բանակին օժանդակում էր թշնամու դեմ հաղթանակ ձեռք բերելու գործում։

1945 թվին գարնանացանը կատարված է ավելի կազմակերպված և ավելի կարճ ժամկետներում քան անցյալ տարի, աշխատանքների ավելի լավ որակով։ Գարնանացանի պետական պլանը կոլխոզները և գյուղացիական տնտեսությունները կատարել են 100,1 տոկոսով, իսկ հացահատիկային կուլտուրաների գծով՝ 102,8 տոկոսով, բամբակենու գծով՝ 100 տոկոսով, շաքարի ճակնդեղի գծով՝ 101,0 տոկոսով։

Գարնանացանի հաջող կատարումը և գարնանային դաշտային աշխատանքների ավելի բարձր որակը հնարավորություն են տալիս ընթացիկ տարում ամենուրեք ստանալու լավ բերք, զգալի չափով ավելացնելու հացահատիկի, բամբակի, վուշի, ձիթատու կուլտուրաների, շաքարի



ճակնդեղի, կարտոֆիլի, բանջարեղենի համախառն բերքը, ժամանակին և ամբողջովին կատարելու գյուղատնտեսական մթերքների մթերումների պետական պլանը, կուտակելու կոլխոզների, սովխոզների, գյուղացիական տնտեսությունների սերմացուի ֆոնդերը և բարձրացնելու կոլխոզների, կոլխոզնիկների ու գյուղացիական տնտեսությունների եկամուտները։

ՍՍՌՄ Ժողկոմսովետը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն բոլոր պարտիական, սովետական, հողային, մթերող կազմակերպությունների, կոլխոզների, ՄՏ կայանների, սովխոզների, արտադրական ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունների և գյուղացիական տնտեսությունների ուշադրությունը հրավիրում են այն բանի վրա, որ բերքահավաքի ժամանակին կատարումը առանց կորուստների ու գյուղատնտեսական մթերքների մթերումների պլանների անվիճելի կատարումը օրենքով սահմանված ժամկետնե-

րում, ընթացիկ տարում համաժողովրդական կարևորագույն նշանակություն ունեն պատերազմի հետևանքները ամենաարագ կերպով լիկվիդացնելու և մեր երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը ամենակարճ ժամկետներում վերականգնելու համար։

ՍՍՌՄ Ժողկոմսովետը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն. սովետական, պարտիական, հողային, մթերող օրգաններին նախազգուշացնում են բերքահավաքի և գյուղատնտեսական մթերքների մթերումների գործում անցյալ տարի տեղի ունեցած թերությունների կրկնությունից։ Այդ թերությունները կայացել են նրանում, որ մի շարք մարզերի, երկրամասերի և ռեսպուբլիկաների ՄՏ կայանները, կոլխոզները, սովխոզները և օժանդակ տնտեսությունները լուրջ կերպով ուշացան տրակտորները, բերքահավաքի մեքենաները և կալսիչները աշխատանքի նախապատրաստելու գործում և չապահովեցին դրանց լիակատար



օգտագործումը բերքահավաքի ժամանակ, վնասակար հերթականություն էին թույլ տալիս հացահատիկի բերքահավաքի ու կալսման ժամանակ, որի հետևանքով ձգձգվում էր կալսումը և գյուղատնտեսական մթերքների մթերումները, առաջ էր գալիս բերքի կորուստ, իսկ առանձին կոլխոզներում ու սովխոզներում նույնիսկ թերակատարվում էին գյուղատնտեսական մթերքների մթերումների պետական պլանները։ Որոշ մարզերում, երկրամասերում և ռեսպուբլիկաներում անբավարար էր կազմակերպված Մթերումների ժողկոմատի մթերակայանների աշխատանքը՝ կոլխոզներից ու սովխոզներից հացահատիկ ընդունելու գծով՝ կայանները կադրերով չէին կոմպլեկտավորված, հացահատիկ հանձնողներին հացահատիկը ընդունելիս երկար ժամանակ պահում էին կայաններում, անհարմար էին շենքերը, հացահատիկը փչանալուց և հափշտակումներից ապահոված չէր, սխալ էր պահեստավորվում հացահատիկը։

ՍՍՌՄ Ժողկոմսովետը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն սովետական, պարտիական, հողային ու մրթերող օրգանների, ՍՍՌՄ Հողժողկոմատի, ՍՍՌՄ Սովխոզների ժողկոմատի, ՍՍՌՄ Մթերումների ժողկոմատի, ՍՍՌՄ Մննդարդժողկոմատի, ՍՍՌՄ Կաթնեղենի և մսեղենի ժողկոմատի, Ցենտրոսոյուզի առջև, բոլոր կոլխոզների, ՄՏ կայանների ու սովխոզների առջև խնդիր են դնում՝ կոլխոզների, ՄՏ կայանների և սովխոզների բոլոր ուժերն ու միջոցները մոբիլիզացնել, բերքը սեղմ ժամկետներում ու առանց կորուստի հավաքելու համար և յուրաքանչյուր կուլտուրայի գծով ժամանակին կատարել գյուղատնտեսական մթերքների մթերումների պլանները 1945 թվի բերքից։

Արդյունաբերական ձեռնարկությունների, քաղաքային կազմակերպությունների և հիմնարկների կողմից բազմակողմանի օգնություն կազմակերպել կոլխոզներին, ՄՏ կայաններին ու սովխոզներին բերքը հավաքելու և պետությանը գյուղատնտեսական մթերքներ հանձնելու գործում՝ դեպի ՄՏ կայանները, կոլխոզներն ու սովխոզները նորոգող բրիգադաներ, որակյալ բանվորներ ուղարկելու, ավտոտրանսպորտ, ձիեր, սայլեր, տարաներ, սարքավորում, պահեստի մասեր, նյութեր և գործիքներ առանձնացնելու միջոցով։

ՍՍՌ Միության Ժողովրդական Կոմիսարների Սովետը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմը արդյունաբերական ժողկոմատներից պահանջում են անպայման կատարել տրակտորներ, գյուղատնտեսական մեքենաներ, դրանց պահեստի մասեր, պարարտանյութ և քիմիկատներ արտադրելու սահմանված պլանները, ինչպես նաև կատարել գյուղատնտեսությանը նավթամթերքներ և ցանքը խնամելու, բերքահավաքի ու գյուղատնտեսական մթերքների մթերումների համար անհրաժեշտ նյութական-տեխնիկական միջոցներ փոխադրելու ու մատակարարելու պլանները։

ՍՍՌՄ Ժողկոմսովետը և ՀամԿ(բ)Պ

Կենտրոնական Կոմիտեն պարտավորեցնում են ՍՍՌՄ Հողժողկոմատին, ՍՍՌՄ Սովխոզների ժողկոմատին, ՍՍՌՄ Սննդարդժողկոմատին, ՍՍՌՄ Կաթնեղենի ու մսեղենի ժողկոմատին, Մթերումների ժողկոմատին, Ցենտրոսոյուզին, օժանդակ տնտեսություններ ունեցող բոլոր ժողկոմատներին, մարզգործկոմներին, երկրգործկոմներին, ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին, միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներին, պարտիայի երկրկոմներին, մարզկոմներին և շրջկոմներին, շրջգործկոմներին, ՄՏ կայանների ու սովխոզների դիրեկտորներին, գյուղսովետների ու կոլխոզների նախագահներին.

## I.

## ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՄԱՆ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

1. Անհապաղ միջոցներ ձեռք առնել բերքահավաքի բոլոր մեքենաների նորոգումը ուժեղացնելու և դրանք աշխատանքի նախապատրաստա-



տելու համար, որպեսզի բոլոր կոմբայնների, հնձիչ մեքենաների, լոբոգրեյկաների, տրակտորների, կալսիչների, ձիաքարշ սարքերի, լոկոմոբիլների, ավտոմեքենաների և բերքահավաքի ու տրանսպորտի մյուս ինվենտարի նորոգումը և նախապատրաստումը ավարտվի նախքան բերքահավաքն սկսելը, նորոգման աշխատանքներին ներգրավելով գյուղական վայրերում և քաղաքներում գտնվող ձեռնարկությունները, արհեստանոցներն ու դարբնոցները։ Նորոգված կոմբայնները սարքավորել հատուկ հարմարանքներով՝ աշխատանքի ընթացքում հացահատիկը բեռնաթափելու համար, հատիկաորսիչներով, հարդ դիզողներով և պառկած հացաբույսերը հավաքելու հարմարանքներով, իսկ այն կոմբայնները, որոնք մոտորի կամ խեդերի բացակայության պատճառով չեն կարող օգտագործվել բերքահավաքի ժամանակ, սարքավորել կալսման ժամանակ օգտագործելու համար։

2. Պետական հանձնաժողովների միջոցով ապահովել կոմբայնների, կալսիչների և բերքահավաքի այլ մեքենաների նորոգման որակի ստուգումը, թույլ չտալով, որ նորոգումից դուրս բերվեն վատ նորոգված մեքենաներ։ ՄՏ կայանների և սովխոզների դիրեկտորներին՝ արգելել ամփոփագրերի մեջ մտցնելու այն նորոգված կոմբայններն ու կալսիչները, որոնք չեն ստուգվել և չեն ընդունվել պետական հանձնաժողովների կողմից։

3. Պարտավորեցնել մարզգործկոմներին, երկրգործկոմներին. ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին, մարզկոմներին, երկրկոմներին և միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներին՝ ապահովել տրակտորների, կոմբայնների, հնձիչ մեքենաների, կալսիչների և բերքահավաքի այլ մեքենաների պահեստի մասերի արտադրության առաջադրանքի անպայման կատարումը արդյունաբերական յուրաքանչյուր ձեռնարկության կողմից, օգնություն



կազմակերպելով ՄՏ կայաններին, սովխոզներին ու կոլխոզներին՝ տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների առանձին հանգույցները նորոգելու, կոմբայնների համար կորեկ, հնդկացորեն, արևածաղիկ և սերմացու խոտերը հնձելու նպատակով հարմարանքներ պատրաստելու, ինչպես նաև տրակտորային բրիգադների ու կոլխոզների համար անհրաժեշտ գործիքները պատրաստելու գործում։

4. Վերականգնել կոլխոզային դարբնոցների աշխատանքը, որոնք կարևոր նշանակություն ունեն բերքահավաքի հասարակ մեքենաները նորոգելու գործում, ինչպես նաև տրակտորային բրիգադներին և կոմբայնային ագրեգատներին սպասարկելու գործում, պարտավորեցնելով մարզգործկոմներին, երկրգործկոմներին, ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին, պարտիայի մարզկոմներին, երկրկոմներին և միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներին, շրջգործկոմներին և

պարտիայի շրջկոմներին՝ բազմակողմանի օգնություն ցույց տալ կոլխոզներին այդ գործում, մասնավորապես դարբնոցներին ածուխ, երկաթ մատակարարելու և դրանք դարբիններով կոմպլեկտավորելու գործում։

5. Պարտավորեցնել մարզգործկոմներին, երկրգործկոմներին, ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին, պարտիայի մարզկոմներին, երկրկոմներին և միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներին, Մթերումների ժողկոմատին, ՍՍՌՄ Առևտրի ժողկոմատին, ՍՍՌՄ Սննդարդժողկոմատին, ՍՍՌՄ Տեքստիլ ժողկոմատին, Ցենտրոսոյուզին՝ մինչև գյուղատնտեսական մթերքների մթերումների սկիզբը լրիվին պատրաստել էլեվատորները, պահեստները, չորանոցները, շտեմարանները, տարան ու կշեռքները, մթերակայաններին մատակարարել անհրաժեշտ ինվենտար և ընդունման անդորրագրերի ձևեր՝ հացի, կարտոֆիլի, բանջարեղենի ու տեխնիկա-



կան կուլտուրաների 24-ժամյա ընդունումը ապահովելու, ինչպես նաև հանձնողների հետ ժամանակին հաշվարկներ կատարելու համար։ Միջոցներ ձեռք առնել հեռավոր կետերի պահեստները ժամանակին նորոգելու և հեռավոր կետերում գտնվող անցյալ տարիների բերքի ամբողջ հացահատիկը դուրս բերելու համար։

Անհապաղ կազմակերպել դեպի մթերակայանները տանող երկաթուղագծերի նորոգման աշխատանքը, ինչպես նաև կարգի բերել ճանապարհներն ու կամուրջները։

6. Կոլխոզների ու սովխոզների կողմից պետությանը հացահատիկի և ձիթատու կուլտուրաների հունդերի հանձնումը հեշտացնելու համար, պարտավորեցնել Մթերումների ժողկոմատին՝ մինչև հացամթերումների սկիզբը Զագոտզեռնոյի մթերման կայաններ բաց անել երկաթուղային կայարաններում, կիսակայարաններում և նավահանգիստներում։ Հաղորդակցության ճանապարհների ժողկոմատին և Գետային նավատորմի

ժողկոմատին՝ մինչև ս. թ. հուլիսի 25-ը ժամանակավորապես օգտագործելու համար Մթերումների ժողկոմատին հանձնել կայարաններում, կիսակայարաններում և նավահանգիստներում եղած պահեստները՝ մթերակայաններ կազմակերպելու համար։

7. Պարտավորեցնել Հաղորդակցության ճանապարհների ժողկոմատին՝ հացահատիկի փոխադրման համար պատրաստել ծածկված շարժական գնացք և անհրաժեշտ քանակությամբ վահաններ, առաջին հերթին վագոններով ու վահաններով ապահովելով Ուկրաինայի, Հյուսիսային Կովկասի, Սիբիրի և Հեռավոր Արևելքի երկաթուղիները։

8. Պարտավորեցնել Մթերումների ժողկոմատին և ՍՍՌՄ Սովխոզների ժողկոմատին՝ մինչև հացամթերումների սկիզբը ապահովել Սոյուզզագոտտրանսի և Սովխոզտրանսի բեռնատար ավտոմեքենաների վերականգնումն ու նորոգումը։ Թույլ չտալ, որ Սոյուզզագոտտրանսի և Սովխոզտրանսի ավտոմեքենաները



օգտագործվեն հացահատիկի, ձիթատու կուլտուրաների հունդերի, բամբակի ու շաքարի ճակնդեղի փոխադրման հետ չկապված այլ բեռներ փոխադրելու համար։ Սահմանել, որ Սոյուզզագոտտրանսի և Սովխոզտրանսի բոլոր ավտոմեքենաները, որոնք զբաղված չեն հեռավոր կետերից հացահատիկ, ձիթատու կուլտուրաների հունդեր, բամբակ ու շաքարի ճակնդեղ փոխադրելու գործով, հատկացվում են հացահատիկի փոխադրմանը երկաթուղիներից և նավահանգիստներից հեռու գտնվող սովխոզներից ու կոլխոզներից։

9. Մինչև բերքահավաքի սկիզբը կատարել յուրաքանչյուր շրջանի ՄՏ կայանի, կոլխոզի ու սովխոզի նախապատրաստության ստուգում բերքահավաքի և գյուղատնտեսական մթերքների մթերումների համար, այդ նպատակով առանձնացնելով ռեսպուբլիկաների ժողկոմսովետների, երկրգործկոմների, մարզգործկոմների, միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմների, պարտիայի երկրկոմների, մարզկոմ-

ների, շրջգործկոմների և պարտիայի շրջկոմների ղեկավար աշխատողներ։

Կոլխոզների, ՄՏ կայանների ու սովխոզների գծով կատարված ըստուգման արդյունքները քննարկել շրջգործկոմներում և պարտիայի շրջկոմներում, իսկ շրջանների արդյունքները՝ մարզգործկոմներում, երկրգործկոմներում, ռեսպուբլիկաների ժողկոմսովետներում, պարտիայի մարզկոմներում, երկրկոմներում և միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներում, անհրաժեշտ միջոցներ ձեռք առնելով բերքահավաքի և գյուղատնտեսական մեքենաների մեքենաների նախապատրաստման գործում հայտաբերված թերությունները վերացնելու համար։

10. Ապահովել, որ բերքահավաքի սկզբից ոչ ուշ քան տաս օր առաջ յուրաքանչյուր կոլխոզում, սովխոզում ու ՄՏ կայանում յուրաքանչյուր տրակտորային, դաշտավարական բրիգադայում կազմվեն բերքահավաքի փոխադրման և պետությանը գյուղատնտեսական մթերքներ



հանձնելու աշխատանքային պլանները և բերքահավաքին զուգադիպող աշխատանքների կատարումը։ Այդ պլաններում նախատեսել.

ա) բոլոր կոլխոզնիկների և սովխոզների բանվորների լրիվ մասնակցությունը բերքահավաքի աշխատանքներին, ըստ հնարավորին ապատելով ներտնտեսական աշխատանքներում և օժանդակ ձեռնարկություններում զբաղված ավելի շատ կոլխոզնիկներ, դրանց անմիջականորեն բերքահավաքի և հացահատիկի փոխադրման գործում օգտագործելու համար. լիովին օգտագործել տրակտորները, բանող անասունները, կոմբայնները, բերքահավաքի բոլոր մյուս մեքենաները, բերքահավաքի և տրանսպորտային ինվենտարը.

բ) կազմակերպել տրանսպորտային բրիգադներ՝ պետությանը հանձնելու համար հացահատիկ ու այլ մթերքներ փոխադրելու նպատակով.

գ) ժամանակին կատարել բերքահավաքի, փոխադրման և պետությանը մթերքներ հանձնելուն զուգադի-

պող դաշտային բոլոր աշխատանքները, ինչպես օրինակ, ուշ կուլտուրաների ցանքերի և մաքուր ցելերի խնամքը, աշնանացան հացաբույսերի ցանքը, փխրեցումը և ցրտահերկը.

դ) միջոցներ ձեռք առնել բերքահավաքի, հացահատիկի և գյուղատնտեսական մյուս մթերքների փոխադրման համար կոլխոզների ու սովխոզների քարշող ուժը և տրանսպորտային միջոցները նախապատրաստելու գծով, նվազագույնի հասցնելով բանող ձիերի ու եզների օգտագործումը ներտնտեսական աշխատանքներում:

11. Բերքահավաքի շրջանում կոմբայնների ու տրակտորների անխափան աշխատանքը ապահովելու համար, յուրաքանչյուր ՄՏ կայանում և սովխոզում կոմբայնային յուրաքանչյուր 10 ագրեգատի համար սարքավորել մեկ շրջիկ ավտոարհեստանոց կամ թե յուրաքանչյուր 5 կոմբայնային ագրեգատի համար՝ մեկ ձիաքարշ շրջիկ արհեստանոց: Շրջիկ արհեստանոցները կոմպլեկտավորել



նորոգող բանվորների որակյալ կադրերով և յուրաքանչյուր կոմբայնային ագրեգատ ապահովել գործիքով ու առավել գործածական պահեստի մասերով, որոնք անհրաժեշտ են դաշտում նորոգում կատարելու և տեխնիկական խնամքի համար, ինչպես նաև յուրաքանչյուր կոմբայնային ագրեգատ ապահովել յուղ լցնելու ինվենտարով և հակահրդեհային միջոցներով: Կահավորել դաշտային կայանները բերքահավաք կատարող տրակտորային բրիգադների համար:

12. Տեղական և միութենական արդյունաբերության ձեռնարկություններից, արհեստագործական ուսումնարաններից և ֆաբգործուսի դպրոցներից ուղարկել բոլոր նախկին կոմբայնավարներին և որակյալ բանվորներից ու ինժեներա-տեխնիկական աշխատողներից կազմված բրիգադներ՝ մեքենաները նորոգելու և բերքահավաքի աշխատանքները կատարելու գործում ՄՏ կայաններին, սովխոզներին ու կոլխոզնե-

րին օգնություն ցույց տալու համար։

13. Կոլխոզներում և սովխոզներում պատրաստել անհրաժեշտ քանակությամբ կալատեղեր, հացահատիկի ժամանակավոր պահպանման ծածկեր և հացահատիկի մշտական պահպանման շտեմարաններ։ Մինչև ս/թ. օգոստոսի 1-ը հյուսիսային ու կենտրոնական շրջանների, ինչպես նաև Սիբիրի, Ուրալի և Արևելքի շրջանների յուրաքանչյուր կոլխոզում ու սովխոզում, որտեղ բերքահավաքի շրջանում մեծ խոնավությունը հացահատիկի փչանալու վտանգ է ընդեղծում, կառուցել և գոյություն ունեցող շենքերում կահավորել հացահատիկի ամենահասարակ չորանոցներ և նորոգել եղած չորանոցները, ջեռուցվող շենքերը հարմարեցնել հացահատիկ չորացնելու համար, ինչպես նաև աշխատանքի համար նախապատրաստել բաց չորանոցներն ու ծածկված կալատեղերը։ Կոլխոզներին օգնություն ցույց տալ չորանոցների տեսակը ընտրելու գործում և տեղական շինանյութ, սարքավո-



րում տրամադրել հացահատիկի չորանոցներ նախապատրաստելու և կառուցելու համար։ Արհկոոպերացիայի և տեղական արդյունաբերության ձեռնարկություններում կազմակերպել հացահատիկի չորանոցների ստանդարտ դետալների արտադրություն, այն հաշվով, որ այդ դետալները կոլխոզների կողմից պատրաստի վիճակում ձեռք բերվեն և մոնտաժի ենթարկվեն նախապատրաստված շենքերում։

14. Տեղական արդյունաբերության ձեռնարկություններում և արհեստագործական արտելներում կազմակերպել սայլերի, անիվների, լծասարքի (խոմուտի, լուծի, լծափոկի), ինչպես նաև անվայուղի պատրաստումը։

15. Հաշվի առնելով բերքահավաքը հաջող անցկացնելու գործում տրակտորներն ու կոմբայնները վառելանյութով և յուղերով ապահովելու բացառիկ կարևոր նշանակությունը, պարտավորեցնել ՍՍՌՄ Ժողկոմսովետին կից Գլավնեֆթեսնաբին,

Հաղորդակցության ճանապարհների ժողկոմատին, Գետային նավատորմի ժողկոմատին և Ծովային նավատորմի ժողկոմատին՝ ապահովել վառելանյութի և յուղերի ժամանակին կուտակումը լցնող կայաններում և գետամերձ բաշխիչ նավթաբազաներում, բավականաչափ քանակությամբ դատարկ ցիստեռններ հասցնել լցնող կայարանները, նավթամթերքներ բեռնել գյուղատնտեսության համար և ՄՏ կայաններին ու սովխոզներին, Սոյուզզագոտտրանսի և Սովխոզտրանսի ավտոշրջկաներին անխափան վառելանյութ և յուղեր մատակարարել բերքահավաքի ու հացամթերումների ժամանակամիջոցում:

16. Պարտավորեցնել մարզգործկոմներին, երկրգործկոմներին և ավտոնոմ ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին՝ ըստ յուրաքանչյուր շրջանի, իսկ միութենական ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին՝ ըստ յուրաքանչյուր մարզի սահմանել ՄՏ կայանների, սովխոզների ու օժան-



դակ տնտեսությունների, Սոյուզզագոտտրանսի ու Սովխոզտրանսի ավտոշրջկաների վառելանյութի և յուղերի պահանջը բերքահավաքի ժամանակ և խիստ հսկողություն սահմանել, որ բերքահավաքի համար բերվող նավթամթերքները ճիշտ բաշխվեն նավթաբազաներում, այդ աշխատանքի ղեկավարությունը դնելով մարզգործկոմի, երկրգործկոմի, ռեսպուբլիկայի ժողկոմսովետի նախագահի տեղակալներից մեկի վրա:

Սահմանել, որ դեպի հեռավոր ՄՏ կայանները, ինչպես նաև դեպի բոլոր սովխոզները վառելանյութի փոխադրումը պետք է կատարվի առաջին հերթին:

17. Երկաթուղիների պետերին և ՍՍՌՄ Ժողկոմսովետին կից Գլավնեվթսնաբի վարչությանը՝ արգելել և թույլ չտալ կայաններում ու ճանապարհին ցրելու այն մարշրուտները, որոնք առանձնացված են գյուղատնտեսությանը նավթամթերքներ փոխադրելու համար:

Պարտավորեցնել մարզգործկոմնե-

րին, երկրգործկոմներին և ռեսպուբ-
լիկաների ժողկոմսովետներին՝ խիստ
վերահսկողություն սահմանել մար-
շրուտների շրջապտույտը ժամանա-
կին կազմակերպելու և ավելացնե-
լու, ճանապարհին նրանց շարժման,
նավթամթերքները ժամանակին նավ-
թաբազաները դատարկելու, դատար-
կելուց հետո ցիստերնները հավաքե-
լու ու մարշրուտ կազմելու և դրանք
անհապաղ լցնող կայանները վերա-
դարձնելու նկատմամբ։

18. Գյուղատնտեսության կարիք-
ների համար նավթամթերքների բեռ-
նումը ինչպես ջրային, այնպես էլ
երկաթուղային ճանապարհներով
ս/թ. երրորդ եռամսյակում կատարել
բոլոր սպառողներից առաջ։

19. Սահմանել, որ բերքահավաքի
և հացահատիկը հեռավոր կետերից
դուրս բերելու համար վառելանյութի
լիմիտները, որոնք առանձնացված
են 1945 թվի հունիս, հուլիս, օգոս-
տոս և սեպտեմբեր ամիսների հա-
մար, ուժի մեջ են 1945 թվի ամ-



բողջ երրորդ եռամսյակի ընթաց-
քում։

ՄՏ կայաններին, սովխոզներին և
արդյունաբերական ժողկոմատների
օժանդակ տնտեսություններին և Սո-
յուզզագոտտրանսին թույլ տալ
Գլավնեվթեսնաբի բազաներում ռե-
սուրսների առկայության դեպքում
ս/թ. օգոստոսին վառելանյութ և յուղ
վերցնել հաջորդ ամսվա լիմիտների
հաշվին։

20. Արգելել ՍՍՌՄ ժողկոմսովե-
տին կից Գլավնեվթեսնաբին Նեվթե-
սնաբի տեղական կառավարչություն-
ներին, մարզերի, երկրամասերի և
ռեսպուբլիկաների սովետական ու
պարտիական օրգաններին՝ մյուս
սպառողներին նավթամթերքներ բաց
թողնել, որոնք բերված են բերքա-
հավաքի, հացահատիկի փոխադրման
և բերքահավաքին զուգադիպող գյու-
ղատնտեսական մյուս աշխատանք-
ները կատարելու համար։

Սահմանել, որ բերքահավաքի և
հացահատիկի փոխադրման համար
բերված վառելանյութն ու յուղերը

ոչ ըստ նպատակի ծախսելու ու շըռայլելու գործում մեղավորները պետք է պատասխանատվության ենթարկվեն:

## II.

## ԿԱԴՐԵՐՈՎ ԱՊԱՀՈՎԵԼՈՒ, ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼՈՒ ԵՎ ՎԱՐՁԱՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*1. Մինչև բերքահավաքի սկիզբը յուրաքանչյուր կոմբայնային ագրեգատ կոմպլեկտավորել պատրաստված կոմբայնավարներով, կոմբայնավարների օգնականներով և տրակտորիստներով: Բերքահավաքից առաջ ՄՏ կայաններում ու սովխոզներում բոլոր կոմբայնավարների հետ կարճատև պարապմունքներ անցկացնել կոմբայնների օգտագործման և տեխնիկական խնամքի հարցերի շուրջը: Հաշվի առնել այն բոլոր կոմբայնավարներին ու կոմբայնավարների օգնականներին, որոնք ներկայումս աշխատում են ոչ ըստ մասնագիտության, և բերքա-*



*հավաքի ժամանակամիջոցում նրանց աշխատանքի ներգրավել ՄՏ կայաններում ու սովխոզներում, կազմակերպելով կոմբայնավարների ու կոմբայնավարների օգնականների ներգրավված կադրերի ժամանակին վերապատրաստումը ՄՏ կայաններին ու սովխոզներին կից կարճատև դասընթացներում:*

*2. Պարտավորեցնել ՄՏ կայանների ու սովխոզների դիրեկտորներին՝ անցկացնել կալսիչների, նավթաշարժիչների և լոկոմոբիլների մեքենավարների պատրաստման կարճատև դասընթացներ՝ եղած յուրաքանչյուր կալսիչը, լոկոմոբիլը և շարժիչը երկու մեքենավարով ապահովելու հաշվով:*

*3. Առաջարկել կոլխոզների վարչություններին, սովխոզների ու ՄՏ կայանների դիրեկտորներին՝ ժամանակին անհրաժեշտ քանակությամբ կոլխոզնիկներ ու սովխոզների բանվորներ առանձնացնել բերքահավաքի ծիաքարշ մեքենաների վրա աշխատելու համար, նրանց ներգրավել*

խրձկապ, հնձիչ մեքենաների, լոբոգրեյկաների նորոգման գործում, այն հաշվով, որպեսզի նրանք մինչև բերքահավաքի սկիզբը նախապատրաստվեն այդ մեքենաների վրա աշխատելու համար։

Հատուկ ուշադրություն դարձնել հնձվորների ընտրությանը և աշխատանքի ճիշտ կազմակերպմանը, նրանց անհրաժեշտ գործիքներ մատակարարելով գերանդիները սրելու և կարգի բերելու համար։ Հնձի գործում պակաս որակյալ կոլխոզնիկներին և կոլխոզնիկուհիներին օգնություն ցույց տալու նպատակով յուրաքանչյուր խմբի մեջ վերցնել մեկ փորձված հնձվոր։

4. Առաջարկել ՄՏ կայանների ու սովխոզների դիրեկտորներին և կոլխոզների նախագահներին.

ա) մինչև բերքահավաքի սկիզբը հացահատիկի տարածությունները նատուրայով ամրացնել յուրաքանչյուր կոմբայնային ագրեգատի, յուրաքանչյուր ձիաքարշ բերքահավաքի մեքենայի և յուրաքանչյուր կոլխոզ-



նիկի ու կոլխոզնիկուհու, որոնք առանձնացված են գերանդիով ու մանգաղով հացաբույսերի բերքահավաք կատարելու համար, և բերքահավաքն սկսելուց ոչ ուշ քան հինգ օր առաջ, բոլոր կոմբայններն ու տրակտորները փոխադրել աշխատանքի վայրը.

բ) բերքահավաքի ամբողջ ժամանակամիջոցում կոմբայնի յուրաքանչյուր ագրեգատի ամրացնել կոլխոզնիկների և սովխոզների բանվորների մշտական կազմ՝ խանդակները հնձելու, անկյունները հնձելու ժամանակ կոմբայնին սպասարկելու, վառելանյութ բերելու, հացահատիկը զտելու ու չորացնելու համար, ապահովելով նրանց հացահատիկազտիչ մեքենաներով և բավականաչափ քաշող ուժով։

5. Պարտավորեցնել մարզգործկոմներին, երկրգործկոմներին և միութենական ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին, պարտիայի մարզկոմներին, երկրկոմներին և միութենական ռեսպուբլիկաների կոմ-

պարտիաների կենտկոմներին՝ մինչև ս/թ. հուլիսի 25-ը բոլոր էլեվատորները, մթերակայաններն ու պահեստները կոմպլեկտավորել անհրաժեշտ աշխատողներով, որոնք ընդունակ են գործնականում ապահովելու հացի ու գյուղատնտեսական մյուս մթերքների պետական պաշարների անխափան ընդունումը և պահպանումը։

6. Սահմանել կոլխոզներում և սովխոզների տերիտորիայում ապրող ամբողջ աշխատունակ բնակչության՝ կոլխոզնիկների ու նրանց ընտանիքների անդամների, ինչպես նաև արդյունաբերության մեջ ու տրանսպորտում չաշխատող ոչ կոլխոզնիկ, այլ աշխատունակ բնակչության պարտադիր մասնակցությունը բերքահավաքի աշխատանքներին, ինչպես չափահասների, այնպես էլ 14 տարեկան և ավելի բարձր դեռահասների պարտադիր մասնակցությունը բերքահավաքի աշխատանքներին։

Սահմանել, որ 1945 թվի բերքա-



հավաքի ժամանակամիջոցում բոլոր աշխատունակ չափահաս կոլխոզնիկները սկսած 14 տարեկանից և ավելի բարձր, անկախ աշխօրերի մինիմումի կատարումից, անպայման պետք է աշխատանքի դուրս գան։

7. Երեխա ունեցող կոլխոզնիկուհիների և սովխոզների բանվորուհիների ակտիվ մասնակցությունը բերքահավաքի աշխատանքներում ապահովելու և բերքահավաք կատարող աշխատողների աշխատանքային ժամանակը խնայելու նպատակով, պարտավորեցնել կոլխոզների վարչություններին և սովխոզների դիրեկտորներին բերքահավաքի և մթերումների ժամանակամիջոցում կազմակերպել մանկամսուրներ, մանկապարտեզներ և մանկահրապարակներ, ինչպես նաև ապահովել երեխաների խնամքը տանը, այդ բանի համար նրանցից խմբեր կազմելով և երեխաների խնամքը հանձնարարելով փորձված հասակավոր կոլխոզնիկուհիների, նրանց աշխատանքը վարձատրելով կոլխոզի հաշվին։

8. Առաջարկել կոլխոզներին՝ սահ-
մանել, որ անհարգելի պատճառնե-
րով բերքահավաքի աշխատանքները
կատարելուց հրաժարվելու համար
չափահաս աշխատունակ կոլխոզնիկ-
ները, կոլխոզի վարչության որոշ-
մամբ, գյուղատնտեսական արտելի
Կանոնադրության 17-րդ հոդվածին
համապատասխան ենթարկվում են
տույժի՝ աշխօրերով և զրկվում են
մթերային ավանսներ ստանալու ի-
րավունքից։

9. Պարտավորեցնել ռեսպուբլիկա-
ների ժողկոմսովետներին, երկրր-
գործկոմներին, մարզգործկոմներին
և շրջգործկոմներին՝ նախօրոք սահ-
մանել կոլխոզների ու սովխոզների
բանվորական ուժի պահանջը բերքա-
հավաքի ժամանակամիջոցում և
«Բերքահավաքի ու գյուղատնտեսա-
կան մթերքների մթերումների մա-
սին» ՍՍՌՄ Ժողկոմսովետի ու Համ
Կ(բ)Պ Կենտկոմի 1944 թվի հուլիսի
19-ի որոշման համապատասխան,
քաղաքների և գյուղական վայրերի
աշխատունակ բնակչությանը ներ-



գրավել բերքահավաքի աշխատանք-
ներում։

10. Մոբիլիզացման կարգով բեր-
քահավաքի աշխատանքներում ներ-
գրավված աշխատունակ բնակչության
համար սահմանել աշխատանքային
պարտադիր առաջադրանքներ՝ 40—
50 աշխօր կոլխոզներում և 50—60
օրվա նորմա սովխոզներում, որի
կատարումից հետո աշխատանքում
ներգրավվածները իրենց ցանկու-
թյամբ ազատվում են մոբիլիզացու-
մից։

11. 1945 թվի համար պահպանել
գյուղատնտեսական աշխատանքնե-
րում ներգրավված քաղաքների ու
գյուղական վայրերի աշխատունակ
բնակչության վարձատրության կար-
գը, այսինքն մինչև աշխատանքում
ներգրավվածների հետ վերջնական
հաշվարկ կատարելը, կոլխոզի վար-
չությունը նրանց ավանս է տալիս
յուրաքանչյուր վաստակած աշխօրի
դիմաց մեկ կիլոգրամ հացահատիկի
չափով, ըստ պայմանավորվածության
դա փոխարինելով հինգ կիլոգրամ

կարտոֆիլով, կամ գյուղատնտեսական այլ մթերքներով։

12. Պարտավորեցնել ՍՍՌՄ Առևտրի ժողկոմատին՝ ՄՏ կայաններում և սովխոզներում աշխատանքի ներգրավված ինժեներներին, մեխանիկներին և որակյալ բանվորներին ապահովել հացով և այլ մթերքներով՝ գյուղական վայրերի արդյունաբերական բանվորների համար սահմանված նորմաներով։ Բերքահավաքի աշխատանքներին մասնակցելու ժամանակ ըստ բնակության վայրի պարենային քարտերը պահպանել նրանց ընտանիքների համար։

13. Սահմանել, որ 1945 թվին գյուղատնտեսական աշխատանքներում ներգրավված որակյալ բանվորների աշխատավարձը նրանց աշխատանքի տեղում պահպանվում է վերջին երեք ամսվա միջին աշխատավարձի 50 տոկոսի չափով։

14. Բերքահավաքի և մթերքները պետական մթերակայանները փոխադրելու ժամանակ բոլոր կոլխոզներում և սովխոզներում ապահովել աշխատանքի կազմակերպումը անհա-



տական և փոքր խմբային (օղակային) գործավարձի լայն կիրառման հիման վրա։ Այդ կապակցությամբ, առաջարկել կոլխոզներին բրիգադաներում և օղակներում կիրառել հնձի, խուրձկապի, խուրձեր դիզելու և փոխադրելու, փոցխելու, ձեռքի աշխատանքի անհատական կամ խմբային առաջադրանքներ՝ դաշտում առանձնացնելով որոշակի հողամաս, իսկ հացահատիկի զտման, փոխադրման և մյուս աշխատանքներում անհատական ու խմբային առաջադրանքներ, հաշվի առնելով աշխատանքների որոշակի ծավալը։

15. Իրենց կովերով աշխատելու ցանկություն հայտնած կոլխոզնիկների, բանվորների և ծառայողների համար սահմանել նորմաներ՝ ճիշտ այդպիսի աշխատանքների համար ձիով աշխատելու դեպքում կոլխոզի կամ սովխոզի ընդունած նորմաների մեկ երրորդի չափով, պահպանելով միևնույն գործավարձային գնահատումները։ Կոլխոզներում բերքահավաքի աշխատանքներում իրենց կովերով աշխատող կոլխոզնիկների հա-

մար կատարած աշխատանքի դիմաց աշխօրեր գրանցել կրկնակի չափով, իսկ սովխոզներում բերքահավաքի աշխատանքներում իրենց կովերով աշխատող բանվորների ու ծառայողների վարձատրությունը սահմանել կրկնակի չափով ձիով այդ նույն աշխատանքները կատարելու համար սահմանված գնահատումների համեմատությամբ։

Հանրային տնտեսության մեջ կատարվող աշխատանքի բոլոր օրերին կոլխոզնիկների, բանվորների ու ծառայողների կովերը ապահովել հանրային հոտից աշխատանքներին մասնակցող կովերին համահավասար կերով։

16. Պահպանել իրենց կովերով պետությանը հացահատիկ փոխադրելու աշխատանքի համար կոլխոզնիկների, բանվորների ու ծառայողների վարձատրության հետևյալ կարգը.

ա) իր կովով հացահատիկ փոխադրող կոլխոզնիկին, բանվորին ու ծառայողին յուրաքանչյուր ցենտ-



ներ-կիլոմետրի համար գրանցել 0,30 աշխօր.

բ) լրացուցիչ կերպով խրախուսման կարգով յուրաքանչյուր ցենտներ-կիլոմետրի համար տալ մինչև 135 գրամ հացահատիկ, այն 15 տոկոս հատկացումների հաշվին, որոնք առանձնացվում են կոլխոզնիկներին ավանսավորելու և ներտնտեսային կարիքների համար, իսկ ամսական սահմանված նորմայից ավելի փոխադրված հացահատիկի համար հացահատիկ տալ կրկնակի չափով։

Սովխոզներում բանվորների ու ծառայողների կովերով պետությանը հացահատիկ փոխադրելու աշխատանքը վարձատրել կրկնակի չափով այդ նույն աշխատանքը ձիով կատարելու վարձատրության համեմատ, ինչպես նաև լրացուցիչ կերպով խրախուսման կարգով հացահատիկ տալ իրենց կովերով հացահատիկ փոխադրող կոլխոզնիկների համար սույն կետով սահմանված չափով ու կարգով։

17. Բերքահավաքի և մինչև մթերումների պլանի կատարման ժամա-

նակամիջոցում սահմանել հացահատիկի, արևածաղկի, կարտոֆիլի և բանջարեղենի հատկացումներ կոլխոզնիկներին տալու և ներտնտեսային կարիքների համար հետևյալ չափերով. հացահատիկ՝ 15 տոկոս, բրինձ՝ 10 տոկոս, արևածաղիկ՝ 5 տոկոս, կարտոֆիլ և բանջարեղեն՝ 15 տոկոս՝ այդ կուլտուրաների արտադրանքից պետական մթերման կայանները փաստորեն հանձնված քանակությունից։

Խիստ վերահսկողություն կազմակերպել մթերքների հատկացումների սահմանված նորմաները պահպանելու նկատմամբ՝ ավանսներ տալու և կոլխոզների ներտնտեսային կարիքների համար, արմատախիլ անելով դրանց բարձրացնելու նպատակով խախտման բոլոր փաստերը և մեղավորներին պատասխանատվության կանչել որպես հացահատիկը վատնողների։

Կոլխոզների վարչություններին առաջարկել ավանսավորման ֆոնդից հացահատիկ, արևածաղիկ, կարտոֆիլ ու բանջարեղեն բաց թողնել կոլ-



խոզնիկներին, խստիվ նկատի առնելով նրանց վաստակած աշխօրերը։

18. Պահպանել վուշ-կանեփի բերքահավաքի ՄՏ կայանների մեքենաների, կալսիչների, երեքնուկի և առվույտի կալսման ու քամհարման և վուշ-կանեփ գզող մեքենաների վրա աշխատող մեքենավարների աշխօրային վարձատրությունը գոյություն ունեցող նորմաները կատարելու համար՝ նրանց հետ միասին այդ նույն աշխատանքներում աշխատող տրակտորիստների աշխատավարձի չափով և նրանց վրա տարածել աշխօրերի գրանցման ու հաշվարկների կարգը, ինչպես նաև ՄՏ կայանների տրակտորիստների համար սահմանված ինչպես դրամական, այնպես էլ բնավարձի երաշխավորական մինիմումը։

19. Կոլխոզների վարչություններին թույլ տալ կոլխոզային քաշող ուժով աշխատող կոլխոզնիկներին տալ կոմբայնային բերքահավաքից հետո նրանց հավաքած ու տնտեսություն փոխադրած կամ դիզած հարդի մեկ հինգերորդ մասը։ Կոմբայնային բերքահավաքից հետո հարդի փոխա-

դրման կամ դիզման գործում իրենց կովերով աշխատող կոլխոզնիկներին տալ դաշտից փոխադրած կամ դիզած հարդի մեկ երրորդ մասը։

20. 1945 թվի համար պահպանել 1944 թվին գործող կարգը, որի համաձայն մթերքով պարգև է տրվում սովխոզների տրակտորիստներին և ՄՏ կայանների տեղամասային շըրջիկ մեխանիկներին, որոնք ապահովում են կոմբայնային բերքահավաքի սահմանված պլանի կատարումը՝ լավ որակով, այսինքն սահմանել, որ կոմբայնային բերքահավաքի պլանի լավորակ կատարումը ապահոված ՄՏ կայանների տեղամասային շրջիկ մեխանիկները ՄՏ կայաններից ստանում են մթերային պարգև հացահատիկով 10 փթի չափով բերքահավաքը ավարտելուց ոչ ուշ, քան 15 օր հետո, իսկ սովխոզների և սելեկցիոն կայանների տրակտորիստները բացի դրամական վարձատրությունից ստանում են մթերային պարգև հացահատիկով, նրանց հետ համատեղ աշխատող կոմբայնավարների համար սահմանված չափով։



21. Պարտավորեցնել տեղական պարտիական, սովետական և հողային օրգաններին հասնելու այն բանին, որ բերքահավաքի աշխատանքներում աշխատանքի ճիշտ հաշվառում լինի բոլոր կոլխոզներում և բերքի առանձին հաշվառում, ըստ բրիգադաների և օղակների, որ կոլխոզնիկների և ՄՏ կայանի տրակտորիստների համար ապահովվի լրացուցիչ վարձատրության ստացումը գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու համար, իսկ սովխոզներում՝ բանվորներին տրվի սահմանված մթերային վարձատրությունը։

Հասնել նաև այն բանին, որ շաքարի ճակնդեղի, բամբակի, ձիթատու կուլտուրաների, կոկ-սագըզի, ծխախոտի, մախորկայի և մյուս շարահերկ ու տեխնիկական կուլտուրաների բերքի առանձին հաշվառման այն հողամասերից, որտեղ օղակների առանձին անդամներ դաշտային խնամք և բերքահավաք են կատարել, և ապահովել, որ յուրաքանչյուր կոլխոզնիկ աշխատանքի

լրացուցիչ վարձատրություն ստանա՝ նրան ամրացված կուլտուրաների բերքատվության սահմանված պլանը գերակատարելու համար։

22. Արգելել մինչև բերքահավաքի և պետությանը գյուղատնտեսական մթերքներ հանձնելու վերջը առանց ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի թույլտվության կոլխոզներից, սովխոզներից ու ՄՏ կայաններից բանվորական ուժի, բանող անասունների և տրանսպորտային միջոցների մոբիլիզացումը բերքահավաքի և պետությանը գյուղատնտեսական մթերքներ հանձնելու հետ կապ չունեցող որևէ այլ նպատակի համար։

23. Բերքի ուշադիր և ճիշտ հաշվարկը ապահովելու համար մինչև ս. թ. հուլիսի 30-ը յուրաքանչյուր շրջանում անցկացնել հաշվապահների ու հաշվետարների հրահանգչական խորհրդակցություն բերքահավաքի աշխատանքի հաշվառման, կոլխոզների, բրիգադաների և օղակների բերքի հաշվառման հարցերի շուրջը։



## III.
## ՀԱՑԱՀԱՏԻԿԱՅԻՆ ԵՎ ՁԻԹԱՏՈՒ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

1. Բերքահավաքը ժամանակին և անկորուստ կատարելու նպատակով, թույլ չտալ բերքահավաքի աշխատանքների ժամանակ ուշացում, անմիջապես հնձիչ մեքենաները, լոբոգրեյկաները, խուրձկապ մեքենաները տրամադրել բերքահավաքին, բերքահավաքը կատարել գերանդիներով, մանգաղներով, ժամանակին բերքահավաքի աշխատանքներում ներգրավել բոլոր կոմբայնները, միաժամանակ բերքահավաք կատարելով բոլոր միջոցներով։

2. Սահմանել, որ հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը պետք է ավարտվի ոչ ավելի քան 18—20 աշխատանքային օրում։ Կոլխոզներին թույլ տալ հացահատիկի բերքահավաք կատարել հասարակ մեքենաներով և ձեռքով, անկախ այն բանից, թե տվյալ դաշտամասը առանձնացված է կոմբայնային բեր-

քանհավաքի համար, եթե բերքը հասել է, իսկ կոմբայն չի բերվել կոլխոզ կամ թե կանգ է առել փչացած լինելու պատճառով։

3. ՍՍՌՄ Ժողկոմսովետը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմը մարզերի, երկրամասերի և ռեսպուբլիկաների սովետական, պարտիական և հողային բոլոր օրգաններից, ՄՏ կայաններից, կոլխոզներից ու սովխոզներից պահանջում են ամենօրյա պայքար կազմակերպել կորուստների դեմ, խնամքով պահպանել ինչպես չքաղած բերքը, այնպես էլ բերքահավաքի կալսելու, փոխադրելու և պահպանելու ժամանակ։

Այդ նպատակով

ա) Հասարակ մեքենաներով և ձեռքով հացաբույսերը հնձելուց անմիջապես հետո, կազմակերպել անմիջապես խուրձկապ և դիզում, ինչպես նաև կազմակերպել հասկերի խնամքով հավաքում, այդ աշխատանքում չափահաս բնակչության հետ միասին լայնորեն ներգրավելով դպրոցականներին.

բ) Բերքի կալսման ձեռնամուխ



լինել հունձն սկսելուց ոչ ուշ, քան հինգ օր հետո և թույլ չտալ մասսայական կալսման ուշացում։ Կազմակերպել ՄՏ կայանների, կոլխոզների, սովխոզների բոլոր բարդ և ձիաքարշ կալսիչների 24-ժամյա աշխատանք։ Կոլխոզներում միաժամանակ կալսում և դիզում կատարելու համար բանվորական ուժի պակասության դեպքում, առաջարկել կոլխոզներին հացահատիկը չորանալուց հետո կատարել հնձված ամբողջ հացահատիկի անհապաղ դիզում, ավարտելով դիզումը հունձի վերջանալուց ոչ ուշ քան 10-րդ օրը.

գ) Սահմանել կոլխոզնիկներից և սովխոզների բանվորներից հնձված հողամասերի պարտադիր ընդունում՝ կոլխոզներում՝ դաշտավարական բրիգադայի բրիգադիրի կողմից, իսկ սովխոզներում՝ բաժանմունքի կառավարիչների կողմից՝ օրվա ընթացքում, կոլխոզի նախագահի և սովխոզի դիրեկտորի կողմից՝ հնգօրյա ժամկետում։ Ընդունման ժամանակ հատուկ ուշադրություն դարձնել բեր-

քահավաքի որակի վրա, թույլ չտալով, որ հասկեր մնան դաշտում և անհապաղ միջոցներ ձեռք առնելով հայտնաբերված թերությունները վերացնելու համար.

դ) Կոմբայնավարի կողմից բարձր հունձ կատարելու և կոմբայնը վատ կարգավորելու պատճառով բերքի կորուստ թույլ տալու ժամանակ ՄՏ կայանների և սովխոզների դիրեկտորներին թույլ տալ մինչև 30 տոկոսով կրճատելու կոմբայնավարի վարձատրությունը՝ վատորակ հավաքած հողամասի համար.

ե) Ապահովել կոմբայններից և կալսիչներից ստացված ամբողջ խոնավ հացահատիկի անհապաղ չորացումը կալատեղերում և չորանոցներում, խզում թույլ չտալով հացահատիկի կալսման ու զտման միջև, ինչպես նաև հացահատիկի տաքացումը կույտերում.

զ) Կազմակերպել հացահատիկի պահպանումը չհնձված, հնձված և դեզ արած վիճակում, ինչպես նաև կալատեղերում.



է) Սահմանել ստացված բերքի հաշվառում, բերքահավաքի բոլոր պրոցեսներում։ Հացահատիկը պարտադիր կերպով կշռել կալսիչների մոտ, կոմբայններից վերցնելու ժամանակ և այն պահեստներում ընդունելիս։ Կալատեղերից դեպի պահեստները և կուտակման կայանները հացահատիկ փոխադրող սայլապաններին բեռնագիր թուղթ գրել, նշելով սայլապանի ազգանունը, ուղարկված հացահատիկի ճիշտ քանակը, հիշատակելով տեսակն ու կուլտուրան։

4. Պարտավորեցնել շրջգործկոմների նախագահներին և պարտիայի շրջկոմների քարտուղարներին՝ վերահսկողություն ապահովել դաշտում, կալատեղերում, կալսման և փոխադրման ժամանակ հացահատիկի պահպանման նկատմամբ, ապահովել կշռողների, պահեստապետների, պահակների, շրջիկ պահակների և հացահատիկի փոխադրման ավագ գումակայինների ընտրությունը։

5. Կազմակերպել ուշադիր հս-

կողությունը ձիթատու կուլտուրաների ու առանձնապես արագ թափվող (մանանեխ, ռիժիկ, տզկանեփ-պերիլ և քունջութ) կուլտուրաների հասունացմանը և ժամանակին բերքահավաք կատարելուն, որպեսզի այդ տեխնիկական թանկագին կուլտուրաների բերքի կորուստ չլինի արմատի վրա։

6. Ապահովել ձիթատու կուլտուրաների բերքահավաքը կոլխոզներում ու սովխոզներում ամենակարճ ժամկետներում։ Արևածաղկինը ոչ ավելի քան 8—10 աշխատանքային օրում՝ յուրաքանչյուր կոլխոզում ու սովխոզում, տզկանեփի քնջերի առաջին կտրումը երկու օրվա ընթացքում, սոյայի և գանգրավուշի բերքահավաքը 5—6 օրում, մանանեխի, ռիժիկի, պերիլի, լյալեմանցիումի բերքահավաքը 3—4 օրվա ընթացքում՝ յուրաքանչյուր կոլխոզում ու սովխոզում։

7. Մինչև ս/թ. օգոստոսի 1-ը ապահովել ուշահաս կուլտուրաների (տզկանեփի, սոյայի, արախիսի և



արևածաղկի) հատուկ չորանոցների և չորացման շենքերի նախապատրաստումը, նոր չորանոցների կառուցման համար առանձնացնելով անհրաժեշտ քանակությամբ շինանյութ, կազմակերպելով այդ կուլտուրաների բերքի ժամանակին մշակումը և չորացումը։

## IV.

## ՀԱՑԱՀԱՏԻԿԱՅԻՆ ԵՎ ՁԻԹԱՏՈՒ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

1. ՍՍՌՄ Ժողկոմսովետը և Համ Կ(բ)Պ Կենտկոմը բոլոր պարտիական ու սովետական, մթերող և հողային օրգանների, ՄՏ կայանների, սովխոզների ու կոլխոզների ուշադրությունը հրավիրում են այն բանի վրա, որ խաղաղ շինարարության անցնելու և ժողովրդական տնտեսության մեջ պատերազմի հետևանքները լիկվիդացնելու ժամանակաշրջանում երկրին պարենամթերք, հումք և առաջին հերթին հաց ապահովելու գործը տնտեսա-քաղաքական ամենակարևոր խնդիրներից մեկն է,

որի հաջող լուծումից կախված է գերմանական զավթիչների կողմից ավերված արդյունաբերության, տրանսպորտի, քաղաքների և գյուղերի ամենաարագ վերականգնումը, ժողովրդի նյութական բարեկեցության բազմակողմանի բարելավումը և մեր Հայրենիքի հզորության հետագա ամրապնդումը։

ՍՍՌՄ Ժողկոմսովետը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմը պարտիական, սովետական, մթերող և հողային օրգաններին պարտավորեցնում են կազմակերպել հացահատիկի և գյուղատնտեսական մյուս մթերքների մթերումը 1945 թվի բերքից այնպես, որ գյուղատնտեսական մթերքների բոլոր տեսակների մթերման պլանը յուրաքանչյուր շրջանի, կոլխոզի ու սովխոզի գծով անպայման կատարվի օրենքով սահմանված ժամկետներում։

2. Պարտավորեցնել պարտիայի մարզկոմներին, երկրկոմներին և միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներին, մարզ-



գործկոմներին, երկրգործկոմներին և ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին՝ անհրաժեշտ օգնություն ցույց տալ Մթերումների ժողկոմատի լիազորներին և մթերող օրգաններին նրանց աշխատանքում՝ պետությանը գյուղատնտեսական մթերքներ հանձնելու պարտավորությունները ամենաարագ կերպով կոլխոզներին հանձնելու և կոլխոզների բերքատվության կարգերը որոշելու գործում, ժամանակավորապես նրանց տրամադրության տակ դնելով անհրաժեշտ թվով ստուգված աշխատողներ և այդ ժամանակ արմատախիլ անելով հակապետական ամեն տեսակ փորձեր, որոնց նպատակն է իջեցնել կոլխոզների բերքատվությունը և դրանով իսկ արհեստականորեն իջեցնել բնավարձի չափերը։

3. Պարտավորեցնել Մթերումների ժողկոմատին՝ ապահովել, որ ժամանակին, բայց բերքահավաքը սկսելուց ոչ ուշ քան 15 օր հետո ՄՏ կայանների դիրեկտորներին հանձնել կոլխոզների բերքատվության կարգե-

րի որոշման ծանուցագրերը, իսկ ՄՏ կայանների դիրեկտորներին՝ ապահովել, որ ՄՏ կայանների աշխատանքի հաշիվները կոլխոզներին հանձնվեն ոչ ուշ քան 5 օրվա ժամկետում՝ կոլխոզների բերքատվության կարգը որոշող ծանուցագրերը մթերման լիազորից ստանալուց հետո, իսկ հնձի կոմբայնային բերքահավաքի, կալսման, հացահատիկի զտման ու փոխադրման համար՝ աշխատանքները կատարելու օրվանից ոչ ուշ քան 10 օր հետո:

4. Պարտավորեցնել Մթերումների ժողկոմատին, ՍՍՌՄ Հողժողկոմատին, ՍՍՌՄ Սովխոզների ժողկոմատին, ՍՍՌՄ Սննդարդժողկոմատին, ՍՍՌՄ Կաթնեղենի և մսեղենի ժողկոմատին, մարզգործկոմներին, երկրգործկոմներին, ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին, պարտիայի մարզկոմներին, երկրկոմներին և միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներին, շրջգործկոմներին և պարտիայի շրջկոմներին.



ա) բերքահավաքի առաջին օրվանից կազմակերպել հացահատիկի և ձիթատու կուլտուրաների փոխադրումը դեպի պետական մթերակայանները, որի համար առանձնացնել անհրաժեշտ քանակությամբ կենդանի քաշող ուժ և ավտոմեքենաներ, թույլ չտալով, որ դրանք որևէ այլ աշխատանքում օգտագործվեն մինչև յուրաքանչյուր սովխոզի, կոլխոզի կողմից մթերման պլանի կատարումը:

բ) ապահովել, որ կոլխոզները, սովխոզները և գյուղացիական տնտեսությունները պետությանը հանձնեն միանգամայն բարձրորակ հացահատիկ, բրինձ, արևածաղիկ և այլ ձիթատու կուլտուրաներ, կազմակերպելով հատկապես կոմբայններից ստացված հացահատիկի խնամքով զտումը, ինչպես նաև խոնավ հացահատիկի ժամանակին չորացումը:

5. Սահմանել, որ կոլխոզների և սովխոզների կողմից պետությանը տրվող հացահատիկի, ձիթատու կուլտուրաների և կարտոֆիլի առաջին հանձնումներից առաջին հերթին մարվում են պետությունից կոլխոզ-

ների ու սովխոզների ստացած վարկերը, ինչպես նաև պարտադիր հանձնումների և ՄՏ կայանների կատարած աշխատանքի բնավարձի գծով կոլխոզների անցյալ տարիների պարտքերը։

Դրանից հետո կոլխոզների կողմից մթերակայանները հանձնվող հացահատիկը, ձիթատու կուլտուրաները և կարտոֆիլը գրանցվում են պարտադիր հանձնումների և բնավարձի հաշվին, մթերումների այն տեսակների գծով, որոնք նշված են կոլխոզների բեռնագրերում, ըստ որում բնավարձի վճարումը պետք է հաշվարկվի ոչ ցածր այն չափից, որը համապատասխանում է տվյալ շրջանի համար սահմանված մթերումների պետական պլանով որոշված բնավարձին։

Նախազգուշացնել ՄՏ կայանների դիրեկտորներին, որ նրանք պետության առաջ պատասխանատու են ՄՏ կայանների աշխատանքի համար բնավարձի հաշվարկման ճշտության, սահմանված ժամկետներում հաշիվները կոլխոզներին հանձնելու և



հանձնված հաշիվներով կոլխոզների կողմից հացահատիկ ու այլ կուլտուրաներ հանձնելու համար, իսկ Մթերումների ժողկոմատի շրջանային լիազորներին նախազգուշացնել, որ նրանք պատասխանատու են պարտադիր հանձնումների պլանի կատարմանը համահավասար բնավարձը լրիվ գանձելու համար։

6. Սահմանել, որ պարտադիր հանձնումների և ՄՏ կայանների կատարած աշխատանքի (բացի կալսումից) բնավարձի գծով կոլխոզների կողմից հացահատիկի, արևածաղկի և մյուս կուլտուրաների հանձնումը, ինչպես նաև կոլխոզնիկների և մենատնտեսների կողմից պարտադիր հանձնումները պետք է կատարվեն ըստ կուլտուրաների, հանձնված պարտավորություններին և ՄՏ կայանների աշխատանքի հաշիվներին ճշտորեն համապատասխան։

Այնպիսի կուլտուրաներ, ինչպես ցորենը, բրինձը, լոբազգիները, հնդկացորենը, կորեկը և տարեկանը հանձնվում են այդ կուլտուրաներից

յուրաքանչյուրի համար տրված պարտավորություններով սահմանված չափերով և ՄՏ կայանների կատարած աշխատանքի հաշիվներով։ Հացահատիկային մյուս կուլտուրաների գծով թույլատրվում է դրանց հանձնումը փոխարինել որևէ այլ հացահատիկային կուլտուրայով՝ ըստ հանձնողի ընտրության։ Ձիթատու կուլտուրաների գծով թույլատրվում է մեկ ձիթատու կուլտուրան փոխարինել մի այլ ձիթատու կուլտուրայով, փոխարինման էկվիվալենտին համապատասխան։

7. Պետությանը գյուղատնտեսական մթերքներ հանձնելու գործում կոլխոզներին ու սովխոզներին օգնություն ցույց տալու համար մարզգործկոմներին, երկրգործկոմներին և ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին թույլ տալ.

ա) մթերումների ժամանակամիջոցում մոբիլիզացնել մարզի, երկրամասի, ռեսպուբլիկայի տերիտորիայում գտնվող բոլոր ձեռնարկությունների, հիմնարկությունների և կազմակերպությունների գործող ավտոտրանսպորտի



մինչև 50 տոկոսը, անկախ նրանց գերատեսչական ենթարկվածության և կատարած աշխատանքի բնույթի, մոբիլիզացված յուրաքանչյուր ավտոմեքենայի համար սահմանելով պարտադիր առաջադրանք հացահատիկը և գյուղատնտեսական մյուս մթերքները դեպի պետական մթերակայանները փոխադրելու համար, ելնելով մեկ ու կես տոննանոց ավտոմեքենայի համար փոխադրման չորս հազար տոննա-կիլոմետր ծավալից։

Առաջարկել այն ձեռնարկությունների, հիմնարկությունների և կազմակերպությունների ղեկավարներին, որոնցից ավտոմեքենաների մոբիլիզացիա է կատարվում, մարզգործկոմների, երկրգործկոմների և ռեսպուբլիկաների ժողկոմսովետների ցուցումով մոբիլիզացված ավտոմեքենաները բերքահավաքն սկսելուց ոչ ուշ քան հինգ օր առաջ տանել աշխատանքի վայրը,

բ) ձիեր ունեցող ձեռնարկությունների և հիմնարկությունների համար սահմանել պետությանը գյուղատնտեսական մթերքներ փոխադրելու

պարտադիր առաջադրանքներ, յուրաքանչյուր բանող ձիու համար 50 տոննա-կիլոմետր ծավալով։

8. Պարտավորեցնել Մթերումների ժողկոմատին, Ցենտրոսոյուզին և ՍՍՌՄ Առևտրի ժողկոմատին մինչև հացամթերումների սկիզբը, Զագոտզեռնոյի գծային կետերում հաց հանձնողների համար կազմակերպել իջևաններ և թեյատներ։

9. Ելնելով այն բանից, որ հացահատիկի և կոլխոզային-սովխոզային այլ արտադրանքի հափշտակումը ամենածանր հանցագործություն է, ՍՍՌՄ Ժողկոմսովետը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմը դատական օրգաններին պարտավորեցնում են՝ կոլխոզների ու սովխոզների հացահատիկը և գյուղատնտեսական այլ մթերքներ հափշտակողներին խստորեն պատժել, ընդհուպ մինչև «Հանրային (սոցիալիստական) սեփականության պահպանության մասին» 1932 թվի օգոստոսի 7-ի օրենքի կիրառումը։



## V.

## ՎՈՒՇԻ ՈՒ ԿԱՆԵՓԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԵՎ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

1. Երկարաձգել վուշի և կանեփի բերքահավաքի ժամանակ օգտագործել ՄՏ կայաններում, սովխոզներում և կոլխոզներում եղած բոլոր վուշ գզող և կանեփի բերքահավաքի մեքենաները, որի համար յուրաքանչյուր ՄՏ կայանում և կոլխոզում սահմանել վուշի ու կանեփի մեքենայական ու ձեռքի բերքահավաքի պլան, մեքենայական բերքահավաքի համար ընտրելով առավել հավասարաչափ ցողուն տված հողամասերը։ Կանեփի և վուշի բերքահավաքի ժամանակ կատարել ցողունների տեսակավորում ըստ որակի։

2. Վուշի և կանեփի կալսումը կատարել խուրձերը չորացնելուց անմիջապես հետո, չսպասելով վուշի և կանեփի և ամբողջ բերքի հավաքմանը, և կալսումը ավարտել բերքահավաքը վերջացնելուց ոչ ուշ քան 10 օր հետո։

Կալսված (գզված) վուշը և կալսված կանեփը անպայման տեսակա-

վորել ըստ որակի և փռել կամ թրջել կալսումից հետո, չսպասելով ամբողջ բերքի կալսման (դզման) վերջանալուն։

3. Երկարաթել վուշի ամբողջ բերքի փռելն ու թրջելը ավարտել ոչ ուշ քան սեպտեմբերի 15-ը և կանեփի թրջումը՝ ոչ ուշ քան հոկտեմբերի 1-ը։

4. Թույլ տալ կոլխոզներին կանեփաթելի ջոկմամբ զբաղված կոլխոզնիկներին տալ ջոկված քանակի 30 տոկոսը՝ կանեփաթելի բերքահավաքի ժամանակ վաստակած աշխօրերի վրա բաշխելու համար։ Կանեփաթելի հանձնումը կատարել այն ջոկելուց անմիջապես հետո։

5. Բոլոր վուշացան և կանեփացան կոլխոզներում ապահովել վուշի ու կանեփի նոր չորանոցների կառուցումը և գոյություն ունեցող շենքերի նորոգում, որպեսզի յուրաքանչյուր չորանոցներով՝ վուշի ու կանեփի կոլխոզ լիովին ապահովված լինի աշնան-ձմեռային սկզբնական մշակման համար։

6. Թույլ տալ վուշի և կանեփի



ցանք ունեցող կոլխոզներին, վուշի և կանեփի սկզբնական մշակման և տեսակավորման արտադրական նորմաները կատարող և գերակատարող կոլխոզնիկների համար աշխօրերի գրանցումից բացի, լրացուցիչ վարձատրություն սահմանել պարենային հացահատիկով ու դրամով՝ հետևյալ չափերով.

ա) մշակված և պետությանը հանձնված վուշի ու կանեփաթելի յուրաքանչյուր 10 կիլոգրամի համար կոլխոզնիկներին վճարել մինչև 2 կիլոգրամ հացահատիկ և մինչև 2 ռուբլի դրամ.

բ) տեսակավորված, չորացված և գործարաններին հանձնված վուշի ու կանեփի յուրաքանչյուր 100 կիլոգրամ տրեստայի համար՝ մինչև 1 կիլոգրամ հացահատիկ և մինչև 1 ռուբլի դրամ.

գ) պլանից դուրս, պետական գընումների կարգով պետությանը հանձնված վուշի ու կանեփի ամբողջ թելի և տրեստայի համար այդ կուլտուրաների սկզբնական մշակմամբ զբաղված կոլխոզնիկներին վճարել

Կոլխոզի ստացած պտուղ-հավելումների 40 տոկոսը։

Հիշյալ մթերային և դրամական վճարումները կատարել վուշի և կանեփի մշակված արտադրանքը պետությանը հանձնելուց անմիջապես հետո։

7. Պարտավորեցնել Մթերումների ժողկոմատին և ՍՍՌՄ Տեքստիլ ժողկոմատին՝ բոլոր մթերակայանները ապահովել երկարաթել վուշի և կանեփի ցողունի, տրեստայի ու թելի արդյունաբերական սորտերի ստանդարտների (էտալոնների) նմուշներով և վուշացան ու կանեփացան կոլխոզներին ծանոթացնել դրանց հետ։

8. Առաջարկել վուշ և կանեփ ցանող շրջանների պարտիական, սովետական և մթերող օրգաններին՝ կազմակերպել վուշի ու կանեփի թելի և հունդերի ժամանակին հանձնումը պետությանը, ապահովելով, որ յուրաքանչյուր շրջան և կոլխոզ օրենքով սահմանված ժամկետում անպայման կատարի այդ կուլտուրաների արտադրանքի մթերումների պետական պլանը։



## VI.

## ԲԱՄԲԱԿԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԵՎ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

1. Պարտավորեցնել ՍՍՌՄ Տեքստիլ ժողկոմատին, Ուզբեկական, Թուրքմենական, Տաջիկական, Կիրգիզական, Ղազախական, Ադրբեջանական և Հայկական ՍՍՌ կոմպարտիաների կենտկոմներին և ժողկոմսովետներին.

ա) ոչ ուշ քան 1945 թվի սեպտեմբերի 15-ը ավարտել անցյալ տարիների բերքի բամբակի հումքի մնացորդների փոխադրումը մթերակայաններից դեպի բամբակազտիչ գործարանները և ավարտել շենքերի ամբողջ նախապատրաստումը նոր բերքի հումք ընդունելու համար.

բ) մինչև 1945 թվի սեպտեմբերի 1-ը բոլոր մթերակայաններն ապահովել բամբակի հումքի արդյունաբերական տեսակների ստանդարտ նմուշներով (էտալոններով) և կարճատև դասընթացներ անցկացնելու միջոցով բոլոր չանաքողներին ծանոթացնել դրանց հետ.

գ) կազմակերպել բամբակի հում-

քի անխափան ընդունումը, թույլ չտալով, որ կոլխոզային սայլերը երկար սպասեն մթերակայաններում։

դ) մինչև 1945 թվի սեպտեմբերի 1-ը ապահովել, որ բամբակի ապրանքավորման համար բամբակացան շրջանները փոխադրվեն հացահատիկ, արդյունաբերական ապրանքներ, յուղ, թեյ, լինտեր և քուսպ՝ ըստ ռեսպուբլիկաների համապատասխան բամբակի կոնտրակտացման պլանների և կազմակերպել այդ ապրանքների անխափան վաճառքը կոլխոզներին՝ հանձնված բամբակի հումքի դիմաց, թույլ չտալով, որ ապառքներ գոյանան։

2. Բամբակի հումքի բերքի կորուստից, որակի վատթարացումից և բերքահավաքի ձգձգումից խուսափելու համար, ձեռնամուխ լինել բամբակի չանաքի հենց որ կնգուղները բացվեն, ապահովելով բամբակի չանաքն ըստ տեսակների, թույլ չտալով, որ տեսակները խառնվեն, ինչպես նաև կորուստ տեղի ունենա չանաքի, պահպանման ու փոխադրումների ժամանակ։ Ամենուրեք բամբա



կի չանաքն ավարտել ոչ ուշ քան նոյեմբերի 25-ին։

3. Բամբակի հումքի չանաքողների աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու նպատակով կոլխոզներին հանձնարարել սահմանել արտադրանքի սեզոնային նորմաներ՝ յուրաքանչյուր աշխատունակ կոլխոզնիկի համար 2—3 տոննայի չափով, իսկ այդ նորմայից ավելի հավաքված բամբակի հումքի համար աշխօրեր գրանցել 1 ու կես չափով։

4. Ոռոգելի բամբակացան շրջաններում ժամանակին ցրտահերկ կատարելու նպատակով առաջարկել կոլխոզներին, սովխոզներին ոչ ուշ քան նոյեմբերի 20-ը դաշտերից հավաքել ցողունը, չբացված եզակի կնգուղների առկայության դեպքում, հետագայում մաքրելով դրանք. բամբակի հումքի հավաքումն ամբողջովին ավարտել մինչև նոյեմբերի 25-ը, իսկ դաշտերի մաքրումը ցողուններից ավարտել մինչև դեկտեմբերի 1-ը։

Ցողուն հավաքող բոլոր մեքենաների նորոգումն ավարտել մինչև նոյեմբերի 1-ը և յուրաքանչյուր մեքե-

նայի համար ապահովել ոչ պակաս քան 100—120 հեկտար սեզոնային միջին արտադրանք։

5. Ընտիր բամբակի հումքի բերքն ավելացնելու և չանաքի որակը լավացնելու գործում կոլխոզնիկների շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով, առաջարկել կոլխոզների վարչություններին՝ չանաքող կոլխոզնիկների վրա բաժանել լրացուցիչ քանակությամբ գործվածքեղեն, որ կոլխոզներն ստանում են ընտիր բամբակի հումք հանձնելու համար, կոլխոզի յուրաքանչյուր անդամի առանձին վերցրած հավաքած ընտիր բամբակի հումքի քանակին խստիվ համապատասխան։

6. Մինչև հոկտեմբերի 1-ը ավարտել կոլխոզներում եղած բամբակի չորանոցների նորոգումն ու վերականգնումը և դրանք ապահովել անհրաժեշտ քանակությամբ վառելանյութով։



## VII.

## ՇԱՔԱՐԻ ՃԱԿՆԴԵՂԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԵՎ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

1. *ՍՍՌՄ* Ժողկոմսովետը և Համ Կ(բ)Պ Կենտկոմը հողային, սովետական և պարտիական օրգանների, կոլխոզների, ՄՏ կայանների ու սովխոզների ուշադրությունը հրավիրում են այս տարի շաքարի ճակնդեղի բերքահավաքը ժամանակին և առանց կորուստի կատարելու մեծ նշանակության վրա։

Պարտավորեցնել բամբակացան շրջանների մարզգործկոմներին, երկրգործկոմներին և ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին՝ սահմանել շաքարի ճակնդեղի հանումը սկսելու ժամկետները ըստ առանձին շրջանների ու կոլխոզների, նայած ճակնդեղի վիճակին և այն բանին, որ շաքարի գործարանների գործարկման սկզբում, գործարանների տերիտորիայում և ճակնդեղի մթերակայաններում լինի ճակնդեղի ոչ պակաս քան հնգօրյա պաշար, իսկ այնուհետև ապահովվի շաքարի գործա-

ըաններին անխափան բեռնավորումը ճակնդեղով։

2. Ապահովել շաքարի ճակնդեղը հանելու և փոխադրելու հետևյալ ժամկետները.

| | Հանումը | Փոխադրումը |
|---|---|---|
| Ուկրաինական և Մոլդավական ՍՍՌ-ներ | 1.11 | 1.12 |
| Կուրսկի և Վորոնեժի մարզեր | 20.10 | 1.12 |
| Ուզբեկական, Ղազախական և Կիրգիզական ՍՍՌ-ներ | 15.11 | 15.12 |
| Վրացական, Հայկական ՍՍՌ-ներ և Կրասնոդարի երկրամաս | 10.11 | 20.11 |
| Լիտվական և Լատվիական ՍՍՌ-ներ | 20.10 | 1.11 |
| Ալթայի և Կրասնոյարսկի երկրամասեր, Նովոսիբիրսկի մարզ, Բուրյաթ Մոնղոլական և Բաշկիրական ԻՍՍՌ-ներ | 10.11 | 10.11 |
| Ալթայի և Կրասնոյարսկի երկրամասերի գետամերձ շրջաններ | 1.10 | 20.10 |
| Մնացած ճակնդեղացան շրջաններ | 20.10 | 20.11 |



3. Պարտավորեցնել ՍՍՌՄ / Հողժողկոմատին, ՍՍՌՄ Սննդարդժողկոմատին, ճակնդեղացան շրջանների պարտիական և սովետական կազմակերպություններին.

ա) մինչև օգոստոսի 20-ը ապահովել ՄՏ կայաններում, կոլխոզներում և սովխոզներում եղած ինվենտարի նորոգումը, որն անհրաժեշտ է ճակընդեղ հանելու համար (ճակնդեղ բարձրացնողներ, բահեր, չափիչներ, քանդիչներ և այլ ինվենտար), ինչպես նաև մասերի պատրաստումը կաղատներում ճակնդեղ պահելու համար.

բ) ճակնդեղի փոխադրման սկզբից 5 օր առաջ ավարտել հին սայլերի նորոգումը և նորերի, տրակտորային սայլակների պատրաստումը, ավտոմեքենաների, ինչպես նաև ճակընդեղ փոխադրելու համար առանձնացված տրակտորների նորոգումը.

գ) ոչ ուշ քան օգոստոսի 10-ը ավարտել սայլի ճանապարհների նորոգումը, կարգի բերել կամուրջները, ինչպես նաև ճակնդեղի մթերակայանների մատույցները.

դ) ճակնդեղ հանելու և փոխադրելու համար առանձնացնել անհրաժեշտ թվով կոլխոզնիկներ, բանվոր անասուններ և ավտոմեքենաներ, թույլ չտալով, որ նրանք այլ աշխատանքում օգտագործվեն մինչև ամբողջ ճակնդեղի հանման և փոխադրման ավարտումը.

ե) հատուկ ուշադրություն դարձնել շաքարի ճակնդեղի ճիշտ կագատավորման վրա, որպես կարևորագույն միջոցի, որն ապահովում է նրա հուսալի պահպանումը մինչև գործարաններ փոխադրելը: Դաշտային կագատներում շաքարի ճակնդեղի պահպանման պատասխանատվությունը, մինչև շաքարի գործարանների ընդունման կայաններին հանձնելը, դնել կոլխոզների նախագահների և սովխոզների դիրեկտորների վրա.

զ) շաքարի ճակնդեղի կորուստների և հափշտակումների դեմ պայքարելու նպատակով ապահովել խստիվ հաշվառք, կոլխոզներում հանված ամբողջ ճակնդեղն ըստ օղակների չափելու միջոցով.



է) կազմակերպել ճակնդեղի պլանտացիաների 24-ժամյա պահպանություն և թույլ չտալ, որ անասուններն արածեն ճակնդեղի արտերում մինչև ճակնդեղի փոխադրման լրակատար ավարտումը:

4. Շաքարի ճակնդեղի արագ հանումը, ինչպես նաև ճակնդեղը կագատներում արագ կերպով դարսելը խրախուսելու նպատակով, առաջարկել կոլխոզներին կոնտրակտացիայի և բնավարձի գծով հանձնած շաքարի ճակնդեղի դիմաց կոլխոզներին հասանելիք շաքարից հանված և մաքրված ճակնդեղի յուրաքանչյուր ցենտների համար առանձնացնել 40 գրամ և 20 գրամ կագատներում դարսված շաքարի ճակնդեղի յուրաքանչյուր ցենտների համար՝ շաքարի ճակնդեղի բերքահավաքով զբաղված կոլխոզնիկների վրա ըստ աշխօրերի բաշխելու համար: Հանձնված ճակնդեղի համար կոլխոզի կողմից ստացվող մնացած շաքարը բաշխվում է ըստ աշխօրերի, ներառյալ նաև այն աշխօրերը, որոնք վաստակվել են շաքարի ճակնդեղի բերքահավա-

քի և սահմանված կարգով այն կաղատներում դարսելու ժամանակ:

Շաքարի ճակնդեղի բերքահավաքով զբաղված կոլխոզնիկներին շաքար տալ յուրաքանչյուր 10-օրյակում, որի համար շաքարի գործարանները պետք է կոլխոզներին ավանսով 60-ական գրամ շաքար բաց թողնեն՝ ճակնդեղի հանձնված յուրաքանչյուր ցենտների դիմաց, սկսած շաքարի գործարանի աշխատելու երկրորդ տասնօրյակից: Կոլխոզների հետ շաքարի վերջնական հաշվարկը շաքարի գործարանները պետք է կատարեն ամբողջ ճակնդեղը հանձնելուց հետո:

5. Կոլխոզների կողմից ոչ կոնդիցիոն ճակնդեղ հանձնելու ժամանակ մթերող կայանի պահանջով կոլխոզների ուժերով կատարել ամբողջ ոչ կոնդիցիոն ճակնդեղի տեսակավորում, իսկ դա չկատարելու դեպքում սահմանված նորմայի մեկ երրորդի չափով նվազեցնել շաքարի հանձնումն ոչ կոնդիցիոն ճակնդեղի դիմաց:



6. Պարտավորեցնել ՍՍՌՄ Սնընդարդժողկոմատին՝

ա) մինչև օգոստոսի 20-ը ապահովել ճակնդեղի մթերակայանների նախապատրաստումը շաքարի ճակնդեղ ընդունելու և պահպանելու համար, կարգի բերել մթերակայանների մատույցները և կոմպլեկտավորել կադրերով (կաղատ անողներ, տեսակավորողներ, կշռավարներ).

բ) շաքարի բոլոր գործարաններում կազմակերպել և ամեն տասնօրյակում հասանելիք շաքարը տալ սայլապաններին, շոֆերներին, բեռնողներին (ավտոմեքենաների վրա), ճակնդեղացան կոլխոզների նախագահներին, բրիգադիրներին՝ շաքարի ճակնդեղի փոխադրման համար համապատասխան «1945 թ. կոլխոզներում շաքարի ճակնդեղի կոնտրակտացիայի պլանի մասին» ՍՍՌՄ Ժողկոմսովետի 1945 թ. ապրիլի 13-ի որոշման:

7. Արգելել, որ կոլխոզները կոլխոզնիկների համար ստացված շաքարը ծախսեն ոչ ըստ նպատակի:

8. Խրախուսելու համար այն կոլ-

խոզնիկներին, բանվորներին ու ծառայողներին, որոնք իրենց կովերը տրամադրում են շաքարի ճակնդեղ փոխադրելու համար, շաքարի գործարաններին թույլ տալ կոնտրակտացիոն պայմանագրերով կոլխոզնիկներին բաց թողնվող շաքարից դուրս, սահմանված արտոնյալ գնով շաքար վաճառել կոլխոզնիկներին, բանվորներին ու ծառայողներին՝ յուրաքանչյուր տոննա-կիլոմետրի դիմաց 300 գրամի չափով:

## VIII.

## ԿԱՐՏՈՖԻԼԻ ՈՒ ԲԱՆՋԱՐԵՂԵՆԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԵՎ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

1. Կարտոֆիլի և բանջարեղենի բերքահավաքն ավարտել մինչև աշնան ցրտերն սկսվելը, բերքահավաքի հետ միաժամանակ կազմակերպելով փոխադրումը դեպի մթերակայանները՝ պետությանը կարտոֆիլ ու բանջարեղեն հանձնելու համար: Կարտոֆիլի բերքահավաքից հետո փոցխել հավաքված հողամասերը և որպես կանոն հետագա կրկնա-



վար կատարել, հավաքելով արմատները:

2. Ապահովել օրվա ընթացքում փորված կարտոֆիլի և քաղված բանջարեղենի ամենօրյա հավաքումը, չորացումը, փոխադրումը դեպի պահեստները և անձրևից ու ցրտերից լավ պաշտպանված ժամանակավոր կույտերի դարսելը:

3. Լայնորեն կիրառել սերմացու բանջարեղենի, ցողունների ընտրովի կտրում՝ դրանց հասունացման ընթաց և չորացումը ծածկերի տակ ու սարայներում, սերմի կորուստ թույլ չտալով փոխադրումների և չորացման ժամանակ:

4. Պարտավորեցնել Մթերումների ժողկոմատին՝ կոնտրակտացիոն պայմանագրերի կարգով մթերողներին հանձնված բանջարեղենի բոլոր սերմերը սերմնաբուծական կոլխոզների համար գրանցել պետությանը բոլոր բանջարեղեն կուլտուրաների և կարտոֆիլի պարտադիր հանձնումների հաշվին, թույլ տալով բանջարեղեն առանձին կուլտուրաների փոխարինում, այլ ոչ նույնանուն կուլտու-

րաների սերմերով։ Կոնտրակտացիոն պայմանագրերի կարգով մթերողներին հանձնված կերային արմատապտուղների և բոստանային կուլտուրաների բոլոր սերմերը սերմնաբուծական կոլխոզների համար գրանցել պետությանը պարտադիր կարգով կարտոֆիլ և խոտ հանձնելու հաշվին։

Սահմանել, որ բանջարեղենի, կարտոֆիլի և խոտի փոխարինումը բանջարեղենի, բոստանային կուլտուրաների և կերային արմատապտուղների սերմերով կատարվում է գործող փոխարինման էկվիվալենտով։

5․ Պարտավորեցնել Մթերումների ժողկոմատին սերմնաբուծական կոլխոզների կողմից «Սորտսեմօվոշչի» պահեստները հանձնված բանջարեղեն-լոբազգիների սերմերն ըստ գործող էկվիվալենտի գրանցել պետությանը պարտադիր կարգով հացահատիկային կուլտուրաների պարտադիր հանձնումները կատարելու հաշվին։



## IX.
## ԾԽԱԽՈՏԻ ՈՒ ՄԱԽՈՐԿԱՅԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԵՎ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

1․ Թույլ չտալ մախորկայի բույսերի և ծխախոտի տերևի գերհասունացում, դրանց բերքահավաքը կատարելով տեխնիկական նորմալ հասունության ժամանակ, իսկ ծխախոտի տերևների հավաքումը բացի դրանից, կատարել ճշտորեն ըստ հողաշերտերի։

2․ Ծխախոտի և մախորկայի չորացումը կատարել չորանոցային հատուկ շենքերում, իսկ դրանց պակասի դեպքում, այդ նպատակի համար հարմարեցված տնտեսական շինություններում և չորանոցային ամենահասարակ կառուցվածքներում, բերքահավաքի և չորացման հետ միաժամանակ ծխախոտը ու մախորկան փոխադրել և հանձնել պետությանը։

Մախորկայի և ծխախոտի չորացման համար չորանոցների նորոգումը և տնտեսական շինությունների

Հարմարեցումն ավարտել ոչ ուշ քան օգոստոսի 1-ը:

3. Սահմանել ծխախոտի ու մախորկայի բերքահավաքն ավարտելու հետևյալ ժամկետները՝

ա) ծխախոտինը — Ղազախական ՍՍՌ-ում, Բրյանսկի, Ստալինգրադի և Վորոնեժի մարզերում՝ ոչ ուշ քան սեպտեմբերի 20-ը. Ուզբեկական, Կիրգիզական, Տաջիկական, Թուրքմենական, Հայկական, Ուկրաինական, Մոլդավական ՍՍՌ-ներում և Կրասնոդարի երկրամասում՝ ոչ ուշ քան հոկտեմբերի 1-ը, Ադրբեջանական, Վրացական ՍՍՌ-ներում, Ղրիմի մարզում և Դաղստանյան ԱՍՍՌ-ում՝ ոչ ուշ քան հոկտեմբերի 10-ը.

բ) մախորկայինը— Ղազախական ՍՍՌ-ում, Ալթայի, Կրասնոյարսկի և Խաբարովսկի երկրամասերում, Վոլոգդայի, Իրկուտսկի, Կեմերովոյի, Կուրգանի, Մոլոտովի, Նովոսիբիրսկի, Սվերդլովսկի, Տոմսկի, Տյումենի և Չիտայի մարզերում, Ուդմուրտական և Բուրյաթ-Մոնղոլական ԱՍՍՌ-ներում՝ ոչ ուշ քան սեպտեմ-



բերի 1-ը, իսկ մնացած բոլոր շրջաններում՝ ոչ ուշ քան սեպտեմբերի 20-ը:

4. Պարտավորեցնել ՍՍՌՄ Տեքստիլ ժողկոմատին և ՍՍՌՄ Հողժողկոմատին՝ ծխախոտ և մախորկա ցանող շրջանները ժամանակին ապահովել անհրաժեշտ քանակությամբ թել՝ ծխախոտ ու մախորկա շարելու և չորացնելու համար:

## X.

## ԿՈՒՍԱԳԻԶԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԵՎ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

1. Սահմանել, որ երկամյա ցանքերում կոկ-սաղըզի արմատների քանդումը ամենուրեք պետք է կատարվի պտղաբերության և սերմի լրիվ հավաքումը ավարտելուց անմիջապես հետո, արմատների քանդման, դրանք հողից, փոշերից մաքրելու և պետությանը հանձնելու համար մթերակայանները փոխադրելու բոլոր աշխատանքները ոչ ուշ քան օգոստոսի 15-ը ավարտելու հաշվով:

Միմիայն ցանքերում կոկ-սաղըզի արմատների քանդումն ավարտել ոչ

ուշ քան հոկտեմբերի 10-ը, բացառությամբ Ուկրաինական և Բելոռուսական ՍՍՌ-ների շրջանների, որտեղ արմատների քանդումն ավարտել մինչև հոկտեմբերի 20-ը, իսկ սպեսուլթյունը հանձնելու համար արմատների փոխադրումը մթերակայաններ ամենաուշը ավարտել ոչ ուշ քան նոյեմբերի 1-ը:

2. Բերքահավաքի ժամանակ կորուստ թույլ չտալու նպատակով

ա) կոկ-սաղըզի արմատների փորումը կատարել ոչ պակաս քան 22—25 սմ. խորությամբ.

բ) փորումից հետո արմատները խնամքով դուրս հանել հողից, անպայման վարելով հավաքված հողամասերը և լրացուցիչ կերպով հավաքելով կոկ-սաղըզի բոլոր հանված արմատները:

3. Պարտավորեցնել Ռետինի արդյունաբերության ժողկոմատին ոչ ուշ քան հուլիսի 25-ը ավարտել մթերակայանների և անհրաժեշտ սարքավորման նախապատրաստումը կոլխոզների կողմից սպեսուլթյունը հանձնելով կոկ-սաղըզի արտադրանքը



անխափան ընդունելու համար:

4. Արգելել, որ կաուչուկատուներ կան փրկադաններում և օդակներում աշխատող կոլխոզնիկները կաուչուկատու բույսերի խնամքի, սերմերի բերքահավաքի և արմատների քանդման ժամանակ օգտագործվեն այլ աշխատանքներում:

## XI.

## ԲԱԶՄԱՄՅԱ ԽՈՏԱԲՈՒՅՍԵՐԻ ՍԵՐՄԵՐԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԵՎ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

1. ՍՍՌՄ Ժողկոմսովետը և Համ Կ(բ)Պ Կենտկոմը հողային, սովետական ու պարտիական կազմակերպությունների, կոլխոզների, ՄՏ կայանների և սովխոզների ուշադրությունը հրավիրում են բազմամյա խոտաբույսերի սերմնադաշտերի բերքը ժամանակին հավաքելու, բազմամյա խոտաբույսերի, սերմերի ամբողջ բերքը լիովին հավաքելու հատուկ նշանակության վրա՝ խոտացանությունը զարգացնելու և ճիշտ ցանքաշրջանառություններ յուրացնելու համար: Այդ նպատակով բազմամյա խոտաբույսերի հասունացման

սկզբնական շրջանում շրջհողքամինի և ՄՏ կայանի գյուղատնտեսների ուժերով կազմակերպել երեքնուկի, առվույտի, տիմոֆեյևկայի, ժիտնյակի և մյուս խոտաբույսերի սերմնադաշտերի փաստական վիճակի ստուգումն և առանձնացումը և սահմանել սերմնադաշտերի բերքահավաքի օրացուցային ժամկետներ ըստ յուրաքանչյուր կոլխոզի, սովխոզի և հողամասի, այն հաշվով, որ դրանց հունձը կատարվի ոչ ավելի քան 5 օրում, իսկ կալսումն և մաքրումն ոչ ավելի քան 20 օրվա ընթացքում՝ հնձի սկզբից: Յուրաքանչյուր կոլխոզում ապահովել բազմամյա խոտաբույսերի սերմնադաշտերի առանձնացումը պետական սահմանված պլանին խստիվ համապատասխան և վերահսկողություն հաստատել խոտաբույսերի սերմնադաշտերը խնամելու վրա, թույլ չըտալով դրանք հնձել որպես խոտ:

2. Առաջարկել կոլխոզների վարչություններին և սովխոզների դիրեկտորներին, հասունացման ժամանակ բազմամյա խոտաբույսերի սեր-



մերի թափվելը կանխելու նպատակով, սահմանված ժամկետներում սերմնադաշտերի բերքահավաքն ապահովել բավականաչափ աշխատող ուժերով: Սերմնադաշտերի բերքահավաքի ժամանակ բրեզենտներն և օղակներն ապահովել անհրաժեշտ հարմարանքներով՝ պարկերով, բրեզենտով, կտավներով՝ բերքահավաքի և փոխադրումների ժամանակ սերմացուն կորուստներից պահպանելու համար:

3. Պարտավորեցնել Մթերումների ժողկոմատին՝ կոլխոզների կողմից պետությանը հանձնվող խոտաբույսերի սերմացուները գրանցել պետությանը հացահատիկի պարտադիր հանձնումների և ՄՏ կայանի կատարած աշխատանքի բնավարձի հաշվին հետևյալ էկվիվալենտներով.

ա) երեքնուկի, առվույտի, ժիտնյակի, տիմոֆեևկայի, խառն եժի, ռայգրասի, աղվեսապոչուկի, կարմրախոտիկի և մարգա-արոտավայրային այլ խոտաբույսերի վաճառված սերմի մեկ ցենտները 5 ցենտներ հա-

ցահատիկային կուլտուրաների դիմաց։

բ) ամերիկյան պիրեի, մարգագետնային խրփուկի և սերադելի վաճառված սերմի մեկ ցենտները՝ հացահատիկային կուլտուրաների 3 ցենտների դիմաց.

գ) վիկայի, կորնգանի, սուդանական խոտի, մոգարայի և աֆրիկյան կորեկի վաճառված սերմի մեկ ցենտները՝ հացահատիկային կուլտուրաների 2 ցենտների դիմաց.

դ) մարգագետնային միատլիկի, սպիտակ պոլևիցայի, շվեդական երեքնուկի և սպիտակ երեքնուկի վաճառված սերմի մեկ ցենտները՝ հացահատիկային կուլտուրաների 6 ցենտների դիմաց:

Պետությանը երեքնուկի, առվույտի, ժիտնյակի, տիմոֆեևկայի, կորնգանի և վիկայի սերմ վաճառող կոլխոզները հացահատիկային կուլտուրաների պարտադիր հանձնումների պլանը կատարելուց, սերմվարկը վերադարձնելուց, սերմֆոնդերը կուտակելուց և ՄՏՍ կայանի կատարած աշխատանքը վարձատրե-



լուց հետո իրավունք ունեն Զագոտզեռնոյի կայաններից հացահատիկային կուլտուրաների սերմացու ստանալ վերևում սահմանված էկվիվալենտով: Հացահատիկային կուլտուրաների սերմացուները կոլխոզներին բաց են թողնվում կանխիկ վճարով մթերման գներով, Զագոտզեռնոյի ծախսերը ծածկելու նպատակով ցենտների վրա ավելացնելով 2 ռուբլի:

Պարտավորեցնել տեղական պարտիական և սովետական կազմակերպություններին, կոլխոզների վարչություններին, կոլխոզնիկներին և գյուղացիական տնտեսություններին՝ լայնորեն պարզաբանել պետությանը բազմամյա և միամյա խոտաբույսերի սերմեր վաճառելու պլանները կատարելու և գերակատարելու համար սույն որոշմամբ սահմանված խրախուսման կարգը:

4. Սահմանել, որ կոլխոզներին և գյուղացիական տնտեսություններին խոտաբույսերի սերմի համար հացահատիկի գրանցում կամ բացթողում կատարվում է այն պայմանով, երբ

մթերման օրգաններին ներկայացվում է շրջհողբաժնի գլխավոր գյուղատնտեսի տեղեկանքը այն մասին, որ սերմֆոնդերում խոտաբույսերի սերմերի կուտակում է կատարվել այն չափերով, որոնք ապահովում են ցանք կատարելու համար կոլխոզի կամ գյուղացիական տնտեսության խոտաբույսերի սերմի պահանջը:

5. Խոտաբույսերի սերմնադաշտերի բերքը հավաքելու և կալսելու աշխատանքներում կոմբայնավարների շահագրգռվածությունը է՛լ ավելի բարձրացնելու նպատակով հացահատիկային կուլտուրաների հավաքված տարածության համար հացահատիկով պարգև տալու ժամանակ խոտաբույսերի սերմնադաշտերի հավաքված յուրաքանչյուր հեկտարը կոմբայնավարների համար գրանցել որպես հացահատիկային կուլտուրաների 3 հեկտար:

## XII.

## ՍԵՐՄՆԱԴԱՇՏԵՐԻ ԲԵՐՔԸ ՀԱՎԱՔԵԼՈՒ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

1. ՍՍՌՄ Ժողկոմսովետը և Համ Կ(բ)Պ Կենտկոմը նշում են, որ չնա-



յած տեղական պարտիական, սովետական և հողային օրգանների բազմիցս արված նախազգուշացումներին, մինչև այժմ էլ կոլխոզներն ու սովխոզները սերմնադաշտերում աճեցրած սեփական սերմերով ապահովելու գործը շատ շրջաններում, կոլխոզներում և սովխոզներում մնում է չկարգավորված: Որոշ կոլխոզներում ու սովխոզներում ժամանակին հոգ չեն տանում սերմացու աճեցնելու մասին, իսկ պարտիական, սովետական և հողային օրգանների ղեկավարները կանգնում են խնամակալական բացահայտորեն անճիշտ ուղու վրա, ձգտելով կոլխոզների ու սովխոզների սերմացուի պակասը ծածկել պետության հաշվին:

ՍՍՌՄ Ժողկոմսովետը և Համ. Կ(բ)Պ Կենտկոմը տեղական պարտիական, սովետական և հողային օրգաններին, կոլխոզներին ու սովխոզներին պարտավորեցնում են բերքահավաքը սկսելուց 20 օր առաջ ստուգել սերմնադաշտերի առանձնացումը և կազմակերպել դրանց ժա-

մանակին բերքահավաքն ու կալսումը: Ըստ յուրաքանչյուր կոլխոզի ապահովել կուտակված սերմացուի ընդունումը պահեստապետների կողմից հատուկ ակտով, որտեղ պետք է նշվի սերմերի քանակն ու որակն ըստ կուլտուրաների տեսակների:

2. Արգելել կոլխոզներին և սովխոզներին սերմնադաշտերի բերքի ծախսումը սերմացուից բացի որևէ այլ նպատակի համար մինչև սերմֆոնդերի լրիվ կուտակումը: Սերմնադաշտերի բերքն ոչ նպատակին օգտագործելու մեջ մեղավորներին ենթարկել քրեական պատասխանատվության:

3. Թույլ տալ յուրաքանչյուր առանձին դեպքում շրջգործկոմի համաձայնությամբ սերմնադաշտերի առանձնացումը օրենքով սահմանված չափերով առավել բերքատու ցանքերից այն կոլխոզներում ու սովխոզներում, որտեղ տարբերային պլանների պատճառով սերմնադաշտերում ցածր բերք է ստացվել, որը չի ապահովում կոլխոզի, սովխոզի սերմացուի պահանջը: Այդպիսի փոխարինումը



կարող է կատարվել համապատասխան կուլտուրայի բերքահավաքը սկսելուց ոչ ուշ քան 10 օր առաջ:

4. Սահմանել, որ սերմնադաշտերից, սերմֆոնդերի լրիվ կուտակումից հետո, սերմնադաշտերի ավելորդ հացահատիկը կոլխոզների ու սովխոզների կողմից պետք է օգտագործվի պետության հանդեպ իրենց պարտավորությունները կատարելու համար, իսկ այդ պարտավորությունները կատարելուց հետո կարող է օգտագործվել այլ կարիքների համար:

5. Պարտավորեցնել կոլխոզների նախագահներին փորձարկված սորտային ցանքերից հավաքված ամբողջ սորտային հացահատիկը, որ ենթակա է պետությանը հանձնվելու, սորտային վկայականներով ուղարկել մթերակայանները:

6. Շրջանային սերմնաբուծական տնտեսությունների կողմից, պարտադիր հանձնումներից և բնավարձից դուրս հանձնված սորտային սերմացուի յուրաքանչյուր 40 փունտի դիմաց տալ 55 փունտ շարքային պա-

րենային հացահատիկ շրջանային սերմնաբուծական տնտեսությանը մոտակա Զագոտզեռնոյի պահեստներից։

7. Պարտավորեցնել ՄՏ կայանների դիրեկտորներին ապահովել շրջանային սերմնաբուծական տնտեսությունների բերքահավաքի առաջնահերթ սպասարկումն, այդ նպատակի համար առանձնացնելով և նրանց ամրացնելով լավագույն տրակտորները, կոմբայններն և առավել փորձված տրակտորիստներին ու կոմբայնավարներին, ինչպես նաև շրջանային սերմնաբուծական տնտեսություններում կազմակերպել հացահատիկի զտումը ՄՏ կայաններում եղած սերմաղտիչ մեքենաներով, այդ մեքենաներն ապահովելով վառելանյութով և յուղանյութերով։

8. Պարտավորեցնել ռեսպուբլիկաների Ժողկոմսովետներին, մարզգործկոմներին, երկրգործկոմներին, Գոսսորտֆոնդի և Գոսսորախֆոնդի մթերակայաններին ապահովել պահեստային պակասող տարողությամբ՝ սորտային սերմացուները մթերելու



և պահպանելու համար, ինչպես նաև Գոսսորտֆոնդին և Գոսսորախֆոնդին անհրաժեշտ օգնություն ցույց տալ տեղական շինանյութերով և բանվորական ուժով պահեստներ կառուցելու և նորոգելու գործում։



ՍՍՌՄ Ժողկոմսովետը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմը գտնում են, որ այժմ պարտիական, սովետական, մթերող բոլոր կազմակերպությունների, գյուղական կոմունիստների, կոմերիտականների, կոլխոզնիկների, կոլխոզնիկուհիների, ՄՏ կայանների ու սովխոզների և գյուղատնտեսության մասնագետների համար ավելի կարևոր տնտեսա-քաղաքական խնդիր չկա, քան բերքահավաքի ժամանակին և ուշադիր նախապատրաստումն ու անցկացումը առանց կորուստների, յուրաքանչյուր շրջանի կոլխոզի և սովխոզի կողմից պետությանը գյուղատնտեսական մթերքներ հանձնելու իր պարտավորությունների կատարումը։

Առաջարկել պարտիայի մարզկոմներին, երկրկոմներին և միութենա-

կան ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներին՝ կազմակերպել սույն որոշման քննարկումը գյուղական վայրերի պարտիական, կոմերիտական ժողովներում, կոլխոզնիկների, սովխոզների ու ՄՏ կայանների բանվորների, մասնագետների ու ծառայողների ընդհանուր ժողովներում, համապատասխան որոշումներ կայացնելու՝ ցանքերը խնամելու, բերքահավաքը և գյուղատնտեսական մթերքների մթերումները նախապատրաստելու և հաջող անցկացնելու վերաբերյալ:

---

Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ



ՎՖ 01568 պատվեր № 899, տիրաժ 5000

Հայկական ՍՍՌ ԺԿՍ-ին կից թերթերի և ամսագրերի տպարան, Երևան